ՅԱՌԱՋ

Le PREMIER QUOTIDIEN ARMENIEN en EUROPE

HARATCH

Directrice : ARPIK MISSAKIAN

Rédaction et Administration : 32, Rue de Trévise - PARIS-9e

Fondé en 1925 Téléph. : PRO. 86 - 60
R. C. Seine 57 A 2731 C. C. P. Paris 15069-82

ՕՐԱԹԵՐԹ

Հիմնադիր՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ
Ֆրանսա և Հասարակապետ. տար. 40 Ն. Ֆր., վեց 22Ն. Ֆր.
Արտասահման՝ տար. 50 Ն. Ֆր. Հատը 0,20 Ն. Ֆր.

ՀԻՆԳՇԱԲԹԻ 1 ԴԵԿՏԵՄԲԵՐ
JEUDI 1er DÉCEMBRE
1960

36ՐԴ ՏԱՐԻ — ԹԻՒ 8964 36ÈME ANNÉE Fondateur : SCHAVARCH MISSAKIAN ՆՈՐ ՇՐՋԱՆ, 16Ր ԴՏԱՐԻ, ԹԻՒ 4765

ԺՐՈՒԱՆ ԽՕՍՔԸ

# ԻՍԿ ՄԵ՞ՆՔ

Բոլշեւիզմը կը ձգտի մեռցնել ազգայնական զգացումն ու սեփական հայրենիքի գաղափարը ժողովուրդներու հոգիին մէջ: Ու յանուն մարքսեան ուղղափառ վարդապետութեան, կը ծրագրէ բոլոր ազգերը համախմբել միջազգայնականութեան դրօշին տակ :

Ազգ ու հայրենիք ժամանակավրէպ են իրեն համար: Դասակարգային պայքարն ու «պրոլետարներու դիկտատորութիւն»ը կը կազմեն իր խտէալը: Կը հաւատայ միայն բռնի ուժին եւ ազգերու ստրկացման:

Քառասուներեք տարուան փորձը ցոյց տուաւ թէ սխալ էր բոլշեւիկեան վարդապետութիւնը: Իտէալը, զոր համայնավար տեսաբանները ուզեցին իրագործել միլիոնաւոր մարդոց արեան գնով, սնանկացած է:

Ազգ ու հայրենիք այսօր, քսաներորդ դարու երկրորդ կիսուն, աւելի քան երբեք կենդանի գաղափարականներ են :

Բոլոր ժողովուրդները, աշխարհի հինգ ցամաքամասերուն վրայ կը ձգտին ունենալ իրենց ազգային, ազատ ու անկախ հայրենիքները: Ասիայէն վերջ, Ափրիկէն ալ արթնցած է: Ու մենք կը տեսնենք թէ ինչպէս ամէն օր նոր պետութիւն մը կեանքի կը կոչուի եւ իր ազգային դրօշը կ'երթայ տնկելու Նիւ Եորք՝ Միացեալ Ազգերու Կազմակերպութեան փառաւոր շէնքի մուտքին առջեւ:

Այսօր, խորհրդայնացումէն քառասուն տարի վերջ, ի սփիւռս աշխարհի ցրուած ազգասէր ու հայրենակարօտ Հայերը կը հարցնեն.

— Իսկ մե՞նք: Ո՞ւր է մեր ազգային դրօշը:

Խաւարակուռ Ափրիկէի խորերն ապրող ժողովուրդներ, որոնք տակաւին նոր կը թեւակոխեն քաղաքակրթութեան սեմէն ներս եւ նոր է, որ մշակոյթ, գիր ու դըրականութիւն պիտի ստեղծեն, արդէն սեփական հայրենիքի տէր են դարձած: Իրենց ներկայացուցիչները ազգերու արիսպագոսին մէջ մեծերուն հետ կողք կողքի նստած են եւ ամէն պատիւ կը վայելեն:

Անոնց անունները թերթերու առաջին էջերուն վրայ կը փայլին: Տակաւին երէկ անծանօթ ազգեր ու երկիրներ, այսօր բոլորի շրթներուն վրայ են՝ Եւրոպայէն մինչեւ Ամերիկա:

Ազատատենչ Հայութիւնը ամէնէն աւելի կ'ուրախանայ, երբ օտար լուծի են թակայ ժողովուրդ մը անկախութեան կը տիրանայ: Ամէնէն աւելի կը գնահատէ ազատութեան բարիքները, դարերով ճաշակած ըլլալով ստրկութեան դառնութիւնները:

Սակայն ամէն անգամ, որ նորազատ ազգի մը դրօշը կը ծածանի Նիւ Եորքի մէջ եւ անոր պատուիրակները կը բազմին միջազգային խորհրդարանին մէջ, չենք կրնար չհարցնել.

— Ո՞ւր են հայ ազգի, հայկական պետութեան ներկայացուցիչները:

Ինչո՞ւ միջազգային մամուլը չի բարեհաճիր — օրուան այնքա՛ն բազմազան հարցերու շարքին — քանի մը տող ալ յատկացնել Հայութեան եւ անոր արդար դատին:

Ուրացու՞մ եւ մոռացո՞ւմ:

Այո՛: Մանաւանդ անոնց կողմէ, որոնք իբրեւ պաշտպան կը ներկայանային մեր ժողովուրդին:

Չկան անոնք հիմա: Բաշխուած են իրենց պատեանները:

Լքուած ենք մեր բախտին:

Իսկ ի՞նչ կը մտածեն անոնք — ազգասէ՛ր ու «Հայաստանասէ՛ր» —, որ արտասահմանի ոստաններուն մէջ նստած: հանդիստ կեանք կը վայելեն, համակերպելով կատարուած իրողութեան :

Փառք կուտային Մոսկուային: Եւ անհոգ ու ձեռնածալ նստած, կը սպասեն հրաշքի մը, որ կ'ուշանայ, աւա՜ղ:

ՀՐԱՆՏ – ՍԱՄՈՒԷԼ

# ԹՈՒՐՔԻՈՅ ՆԵՐՔԻՆ ԿԱՑՈՒԹԻՒՆԸ

## ԵՐԵՔ ՏԱԳՆԱՊՆԵՐ

Մայիսեան թրքական յեղափոխութիւնը տապալեց կառավարութիւն ու սահմանադրութիւն, բայց վեց ամիսէ ի վեր չկըրցաւ վերաշինել ինչ որ քանդեց: Նոր Սահմանադրութիւն մը խոստացած է երկրին, ամիսները կը սահին եւ դեռ սեղանի վրայ անգամ չէ դրուած նախագիծը :

Թուրք պետութեան նախագահը, Կիւրսէլ, Սահմանադիր Ժողովի մը նախագիծը պատրաստելու պաշտօն տուած է Փրոֆ. Թուրհան Ֆէյզիօղլուի, որ ծանօթ է իբրեւ վերատեսուչ Միջին Արեւելքի համալսարանին:

Այս փրոֆէսէօրը կազմած է յանձնախումբ մը, որ քսան օրուան մէջ յաջողեցաւ պատրաստել պահանջուած նախագիծը, բաղկացած 43 էջէ եւ 66 յօդուածէ:

Ըստ այս նախագծին, Թուրքիոյ Նոր Սահմանադիր Ժողովը պիտի բաղկանայ 260 անդամներէ, որոնց 70ը պիտի տան քաղաքական կուսակցութիւնները, 82ը՝ նահանգները, իսկ մնացեալը՝ համալսարանները եւ այլազան ընկերակցութիւններ :

Սահմանադիր Ժողովին մասնակցելու համար կը պահանջուի առնուազն լիսէի ուսում ստացած ըլլալ :

Սահմանադիր Ժողովը, կազմուելէ ետք, պիտի հրաւիրուի վերաքննել Նոր Սահմանադրութիւնը, որ պատրաստուած է Փրոֆ. Սամի Օնարի նախագահութեան տակ աշխատող յանձնախումբի մը կողմէ: Վերջնական ձեւ ստանալէ ետք, նոր սահմանադրութիւնը պիտի ենթարկուի հանրաքուէի :

Եթէ հանրաքուէին արդիւնքը դէմ ըլլայ այս Սահմանադրութեան, Կիւրսէլ պիտի ցրուէ Սահմանադիր Ժողովը, որպէսզի կազմուի երկրորդ Սահմանադիր Ժողով մը: Եթէ հանրաքուէին արդիւնքը ըլլայ դրական, պիտի ձեռնարկուի ընտրութեանց :

Արդ, Անգարայէն կը հեռագրեն թէ վերջապէս պատրաստուեր է սահմանադիր ժողովին նախագիծը եւ յանձնուեր Զօր. Կիւրսէլի :

Միւս կողմէ կը հաղորդուի թէ Հալք կուսակցութեան պետը, Ինէօնիւ, ընդհ. քարտուղարը, Իսմայիլ Րիւշտիւ Աքսալ, եւ օգնականները Քեմալ Սաթըր եւ Օրհան Էօզթրաք որոշած են չմտնել Սահմանադիր Ժողովին մէջ:

Սահմանադիր Ժողովը կազմուելէ առաջ, կը կարծուի թէ արտօնութիւն պիտի տրուի քաղաքական գործունէութեան, այնպէս որ պիտի կազմուին նոր կուսակցութիւններ: Հաւանաբար նախկին դեմոկրատներու մասնակցութեամբ կազմուի նոր կուսակցութիւն մը, որու գլուխը կանգնի ելմտական նախարարը, Էքրէմ Ալիճան, կամ դատական նախարարը, Արթուս: Միլլէթականները տրամադիր են մտնելու Սահմանադիր Ժողովին մէջ:

## ՄԻՒՍ ՏԱԳՆԱՊԸ

Թուրքիոյ ընդհ. տագնապին մէջ կարեւոր գլուխ մը կը կազմէ համալսարաններու փրոֆէսէօրներուն կացութիւնը :

Զօր. Կիւրսէլ յաջողեցաւ երկրէն դուրս նետել յեղափոխութեան այն անդամները, որոնք նեղութիւն կը պատճառէին: Արտաքսուածներէն մին, Սոլմազէր, յայտարարեց թէ կը մեկնին՝ «իրենց հետ տանելով յեղափոխութիւնը»: Յեղափոխութիւնը եթէ մեկնեցաւ, դատավարութիւնները չեն կրնար ծածկել թէ խանգարուած բան մը կայ երկրին հաւասարակշռութեան մէջ: Սահմանադրութեան տագնապէն զատ՝ գոյութիւն ունի համալսարաններու տագնապը : 147 փրոֆէսէօրներ դուրս նետուեցան համալսարաններէն ծանր ամբաստանութիւններով, — անկարողութիւն, սեռային մոլութիւն, եւայլն: Հակառակ բոլոր փորձերուն, պատճառաբանելով թէ չափազանցուած էին ամբաստանութիւնները եւ սխալներ գործուած էին պաշտօնանկութեան գործողութեանց մէջ, կարելի չեղաւ դեռ համալսարան վերադարձնել դուրս նետուած դասախօսները: Զօր. Կիւրսէլ քանիցս յայտարարեց թէ կը վերաքննուի «անիրաւուած» փրոֆէսէօրներուն հարցը, թէ շուտով համալսարան պիտի վերադառնան պաշտօնանկ դասախօսները, բայց ահա կը յայտարարէ համալսարանի վերատեսուչ Փրոֆ. Օնար թէ կարելի չէ եղած համաձայնութիւն գոյացնել կառավարութեան հետ: Նախ, արտաքսուած կամ պաշտօնանկ դասախօսներուն ամբողջ թղթածրարները կորսուած են: Երկրորդ, կառավարութիւնը յամառօրէն կը դիմադրէ վերաքննութեան, հակառակ Օնարի պահանջին թէ պէտք է սրբագրել սխալը:

Վերջին տեղեկութեանց համաձայն, Անգարայի եւ Պոլսոյ համալսարաններուն երկու վերատեսուչներն ալ հրաժարած են իբրեւ բողոքի նշան: Թեքնիք համալսարանին վերատեսուչը կը յայտարարէ թէ պատճառ մը չի տեսներ հրաժարելու : Միւս կողմէ կ'ըսեն թէ կառավարութիւնը կը խորհի դեսպանութեանց կոչել պաշտօնանկ փրոֆէսէօրներէն ոմանք,— կարգադրութիւն մը որ շատ կը յիշեցնէ յեղափոխութեան հերոսներուն հեռացումը երկրէն:

## ԵՐՐՈՐԴ ՏԱԳՆԱՊ

Բանակին մէջ կատարուած մաքրագործումներուն պարագան եւս գոցած չէ իր լուծումը: Հանգստեան կոչուած վաստակաւոր ու բարձրաստիճան զինուորականներ պատուիրակութիւն մը ղրկեցին, անցեալ Զորեքշաբթի, Զօր. Կիւրսէլի, խնդրելով որ վերաքննուի «անիրաւուած» զինուորականներուն կացութիւնը : Զօր. Կիւրսէլ պատասխանեց թէ «խնդիրը պիտի վերաքննուի ի նպաստ երկրին »:

Անգարայէն կը հեռագրեն թէ կառավարութիւնը տուած է իր վճիռը այն երկու խնդիրներուն մասին, որոնք երկար ատենէ ի վեր կը հետաքրքրէին հանրային կարծիքը :

Մէկը հանգստեան կոչուած սպաներու հարցը, միւսը՝ Համալսարանի պաշտօնանկ դասախօսներու հարցը :

Նոր որոշումին համաձայն, այն վաստակաւոր սպաները, որոնք կը փափաքին, պիտի կրնան վերստին պաշտօնի կոչուիլ « բանակային պահեստիներ » անունին տակ: Ասոնք զինուորական բարձր խորհուրդին կողմէ պարտականութիւն պիտի ստանան եւ պիտի օգտագործուին ամէն տեսակ գործողութեան մէջ :

Միւս կողմէ, 147 պաշտօնանկ դասախօսները պիտի չվերադառնան համալսարանի իրենց բուն պաշտօններուն: Սակայն պիտի կրնան պաշտօն ստանալ, կարելիքի համաձայն, իբրեւ կրթական պահեստի մշակներ :

Այս մասին պաշտօնական զեկոյց մը պիտի հրատարակուի ի մօտոյ :

# ՅՈՎՍԷՓԵԱՆ՝
## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԱԽՈՅԵԱՆ

Երեւանի մէջ տեղի ունեցող Հայաստանի ախոյենական մրցումներու ընթացքին, Վ. Յովսէփեան մրցանիշը կոտրած է, կշռագունդը նետելով 18 մեթր 88 հեռաւորութեան, (նախորդ մրցանիշ՝ 18·49): Էքիփ մարզական օրաթերթը կը գրէ թէ այս ձեւով, Յովսէփեան բոլոր ժամանակներու, եւրոպացի ախոյեաններու երկրորդը կը հանդիսանայ, անգլիացի Ռոյէն ետք (19·11, Եւրոպայի մրցանիշ): Տարուան միջազգային դասաւորումին մէջ Յովսէփեան 6րդ տեղը կը գրաւէ :

Ֆրանսական մարզական թերթը կ'աւելցնէ թէ Յովսէփեան Ախթակ ծնած է 1932ին, հասակն է՝ 1 մեթր 88, կշիռը՝ 108 քիլօ, անդամ է Տինամոյի: Խորհրդային ախոյեան էր արդէն 1958ին, երբ Լիտվինէս ձեռքէն առաւ մրցանիշը, որուն վերստին կը տիրանայ այսօր :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԿԻՒՐՍԷԼ, բժիշկներու խորհուրդով պիտի հանգստանայ քանի մը օր: Առժամեայ փոխանորդ նշանակուած է փոխվարչապետը՝ Զօրավար Ֆահրի Օզտիլեք: « Եունայթըտ Փրես» գործակալութեան համաձայն զօրավարը սրտի տագնապ մը անցուցած է:

ՆԱՍԸՐ, Սուտանի բանակին նուիրեց վեց օդանաւ եւ քսան զինուորական փոխադրակառքեր :

ՄԱՒՐԻՏԱՆԻԱ, ՄԱԿ ընդունուելու դիմում կատարած է:

ՔԵՆԹԸՐՊԸՐԻԻ Արք·ը Տոքթ. Ֆիշըր Պէյրութէն Պոլիս անցած է: Պէյրութի մէջ տեսակցած է Մարոնիներու պատրիարք՝ Փոլ Մէուշիի հետ : Տոքթ. Ֆիշըր Կիրակի օր Երուսաղէմ էր ուր տեսնուած է նաեւ Հայոց պատրիարք Եղիշէ Եպիսկոպոսի հետ: Անգամ մը եւս անգլիքան եկեղեցին կ'ուզէ ցոյց տալ մերձեցման իր փափաքը արեւելեան եկեղեցիներու հետ: Հինգշաբթի օր պիտի հասնի Հռոմ եւ ուրբաթ ընդունուի Պապին կողմէ:

ՀԻՒՍԻՍԱՅԻՆ Քաթանկայի Պալուպա ցեղապետները վերջնագիր մը ղրկած են Էլիզապէթվիլի կառավարութեան, պահանջելով շրջանը պարպել: Առջի օր բուռըն բախում մը տեղի ունեցած է Պալուպաներու եւ նիկերացի «կապոյտ սաղաւարտաւորներու» միջեւ: Միւս կողմէ իր նորածին աղջկան մահը պատճառ բռնելով Քոնկոյի նախկին վարչապետը՝ Լումումպա, Սթանլէյվիլ ապաստանած է :

ԹՈՒՆՈՒԶԻ եւ Ալժերիոյ սահմանագլուխին վրայ ծանր միջադէպեր տեղի ունեցան, առջի օր: Ֆելլաղաններու խումբ մը յաջողած է սահմանը անցնիլ եւ գերի բռնել արաբական գիւղի մը յիսուն այրերը , կռիւներու ընթացքին սպաննուած են տասնեակ մը ըմբոստներ :

«ՁԵՄ ԶՂՋԱՐ» յայտարարած է Այխման Հրեաներու ջարդին համար: «Եզրակացնելով , ըսած է գերման ամբաստանեալը, ոչ մէկ բանի համար կը զղջամ: Ամէն պարագայի մէջ, ինքզինքս չեմ վարկաբեկեր յայտնելով թէ կը ցաւիմ: Կը խոստովանիմ թէ եթէ սպաննած ըլլայինք Հիմլերի 1933ին պատրաստած տասը միլիոն Հրեաներու ցանկը, պիտի ըսէի լաւ, թշնամի մը մաքրեցինք»: Այսպէս խօսած է Այխման ամերիկեան Լայֆ թերթին :

ՊՈՒՐԿԻՊԱ տեսակցութիւն մը ունեցած է Նիւզուիքի թղթակիցին հետ եւ յայտարարած.— «Եթէ Ֆերհաթ Ապպաս ըլլայի, կը վերսկսէի Ֆրանսայի հետ բանակցութիւնները, մէկ կողմ դնելով հըպարտութեան աւելորդ հարցեր »:

(Լուրերու շար·ը կարդալ Դ· էջ)

ՔԱՐԱՔԱՍԻ մէջ յարաբերական անդորրութիւն կը տիրէ: Կառավարութիւնը որ պատերազմական վիճակ յայտարարած էր վերջին միջադէպերուն առթիւ, խիստ միջոցներ ձեռք առած է: Ուսանողներու կողմէ կատարուած վերջին ցոյցերուն զոհ գացած են չորս հոգի եւ վիրաւորուած մօտ հարիւր ուրիշներ:

ԿՈՆՔՈՒՐԻ մրցանակն ալ, Ֆեմինայէն ետք, վիճարանութեանց տեղի կուտայ: Բուն անունով Քաֆթանճիօղլու, Վէնթիլիա Հորիա որ 1960ի կոնքուրը ստացաւ ամբաստանուած է իբրեւ հիթլերական: Երեւան հանուած են իր գրութիւնները Նացիներու ի նպաստ Ֆրանսական պարտութեան ատեն:

ՉԸՐՉԻԼ տօնեց իր 86րդ տարեդարձը:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պ. Բարսեղ Փանոսեան, Տէր եւ Տիկ. Թադէոս Յովհաննէսեան եւ զաւակը ինչպէս նաեւ Բարսեղեան եւ Արզումանեան ընտանիքները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց կնոջ, մօր, մեծ մօր եւ ազգականին՝

ԱՆԱՀԻՏ ԲԱՐՍԵՂԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ, այս Կիրակի (Դեկտ. 4) առաւօտ Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

×

ՄԱՐՍԷՅԼ.— Տէր եւ Տիկին Վահրամ Վարդանեան, Տէր եւ Տիկին Սահակ Վարդանեան (Ամերիկա), Տէր եւ Տիկին Մուշեղ Էքինճեան, Աւետիս Մուխբերեան, Այրի Տիկին Տիգրանուհի Վարդանեան, Տէր եւ Տիկին Լեւոն Վարդանեան կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի ողբացեալ՝

ՏԻԿ. ԽԱՍԻԿ ՎԱՐԴԱՆԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ, Փրատոյի Մայր Եկեղեցիին մէջ, այս Կիրակի առաւօտ: Կը խնդրուի ողբացեալին յիշատակը յարգողներէ ներկայ գտնուիլ սոյն արարողութեան:

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

ՄԱՐՏ 12ԻՆ

ՍՈՐՊՈՆԻ ԱՄՖԻԹԱՏՐՈՆԻՆ ՄԷՋ

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՅՈՎՍԷՓ ԷՄԻՆ

ԻՐ ԿԵԱՆՔՆ ՈՒ ԱՐԿԱԾՆԵՐԸ

Անգլերէն բնագրէն թարգմանեց

Յ. ԽԱՇՄԱՆԵԱՆ

Հայ ազատագրական շարժման ռահվիրայ մեծ հայրենասէրին խռովայոյզ կեանքին արկածալից դրուագները:

500 էջ,— Մաքուր տպագրութիւն, լաթակազմ: Գին՝ 12 Ն. Ֆ.:

Դիմել՝

Librairie H. SAMUELIAN

51, Rue Mr.-le-Prince, PARIS (6e)

C. C. P. Paris 1278-35



## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ ԺՈՂՈՎ

ՓԱՐԻԶԻ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու մարմիններու ներկայացուցիչները այս Շաբաթ երեկոյ (3 Դեկտեմբեր) ժամը 20·30ին Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ: 17 Րիւ Պլէօ, մէթրօ Քատէ:

ՕՐԱԿԱՐԳ.— Հ. Յ. Դ. 31րդ Շրջ. ժողովի օրակարգի խնդիրներու քննութիւն:

Սրահին ջերմութիւնը ապահովուած է:

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

Ֆ. Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղի նորընտիր վարչութիւնը թէյասեղան մը կազմակերպած է ի պատիւ նախորդ վարչութեան, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ: Կիրակի, Դեկտեմբեր 11ին, ժամը 3ին:

Սիրով կը հրաւիրուին ընկերուհիներ եւ բարեկամներ:

## ՊԱՏԱՐԱԳ

Սէնթ Անթուանի Ս. Թադէոս Եկեղ. Թաղ. Խորհուրդը կը ծանուցանէ թէ այս Կիրակի օր, Թաղիս Ս. Թադէոս եկեղեցւոյն անուան տօնախմբութեան առթիւ, տեղի պիտի ունենայ հանդիսաւոր Ս. Պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն, Թաղիս եւ շրջաններու բնակչութեան համօրէն ննջեցելոց հոգւոյն, մասնաւորապէս թեմիս նախկին երջանկայիշատակ եւ շինարար Առաջնորդ Տէր Գրիգորիս Եպս. Պալաքեանի, ինչպէս եկեղեցւոյս կնքամօր Օր. Նունիկ Տէր Ղեւոնդեանի ու եկեղեցւոյս շինարարութեան համար սատարողներու հոգւոյն:

Այս առթիւ պիտի պատարագէ եւ քարոզէ Սէն Ժերոմի նորընտիր հոգեւոր հովիւ Արժ. Տէր Եղիշէ Քհնյ. Փանոսեան, նաեւ յաւարտ Ս. պատարագի տեղի պիտի ունենայ աւանդական մատաղի օրհնութիւնն եւ բաշխումը:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Կազմակերպուած Ֆ. Կապ. Խաչի կողմէ՝

ՀԻՆԳՇԱԲԹԻ, ԴԵԿՏԵՄԲԵՐ 29ԻՆ

## Ա Զ Դ

Մոնմորանսիի, Անտիյի եւ Սէն Ռաֆայէլի Հանգստեան Տուներուն մէջ, մօտ ատենէն տրամադրելի անկողիններ պիտի ըլլան, բոլոր այն ծերերը որոնք ցարդ արձանագրուած չեն, պէտք է այժմէն ձեռնարկեն պաշտօնատանց մօտ կատարուելիք ձեւակերպութեանց:

Առ այդ դիմել Աղքատախնամի գրասենեակը, 32, Ռիւ տը Թրէվիզ, Փարիզ (9), պէտք եղած տեղեկութիւնները եւ հրահանգները ստանալու համար եւ ճշդելու ընտրուած հանգստեան տունը:

ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

### ՓՈԽՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆ

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ Ծնողաց Միութեան կազմակերպած տարեկան Տօնածառի հանդէսը տեղի պիտի ունենայ՝

Կիրակի, 11 Դեկտեմբեր

Մանրամասնութիւնները յաջորդով:

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Մարսէյլի Նախկին Հայ Արիներու եւ Արենոյշներու:

Այս Շաբաթ, ժամը 21էն մինչեւ լոյս: ՔԼԻՒՊԻ շքեղ սրահին մէջ,

51, Rue Grignan

Մասնակցութեամբ Մարսէյլի լաւագոյն նուագախումբին, ղեկավարութեամբ

EDDY TOURNELի

Հայկական տոհմիկ պարեր, հայ արենուշներու կողմէ:

Ծոխ պիւֆէ, մատչելի գիներով եւ քօթիյօն:

Օրուան թագուհին պիտի ընտրուի ամենաշնորհալի եւ վայելուչ օրիորդը, քըւէարկութեամբ:

Զանազան հաճելի անակնկալներ:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

# Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ստիպողաբար խմբական ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ խումբի ընկերները:

ԱՄԵՐԻԿԱՅԷՆ ՆՈՐ ԺԱՄԱՆԱԾ՝

ԸՆԿ. Յ. ՏԷՐ-ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ

ՆԵՐԿԱՅ ՊԻՏԻ ԸԼԼԱՅ ԱՅԴ ԺՈՂՈՎԻՆ:

ԱՂԲԻՒՐ ՍԵՐՈԲ, Ուրբաթ 2 Դեկտեմբեր, ժամը 8·30ին, սովորական հաւաքատեղին:

### ԺՈՂՈՎՆԵՐ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Որոնց ներկայ կ'ըլլայ Ամերիկայէն նոր ժամանած՝

ԸՆԿ. ՅՈՎՀԱՆՆԷՍ ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ենթակոմիտէները եւ խումբերը այս Շաբաթ, ժամը 21ին, Ահարոնեան ակումբը:

Զաւարեան եւ Վարանդեան, այս Կիրակի կէսօրէ վերջ:

Վռամեան եւ Ընկեր Կարօ, այս Երկուշաբթի իրիկուն:

Անկնունի եւ Համազասպ, Երեքշաբթի, (Դեկտ. 6):

Հայաստան եւ Իշխան, Չորեքշաբթի, (Դեկտ. 7):

Կապոյտ խաչ, Հինգշաբթի (Դեկտ. 8), կէսօրէ վերջ:

Նոր Սերունդ, Հինգշաբթի (Դեկտ. 8), իրիկուն:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պոմոնի Թաղ. Խորհուրդը կը ծանուցանէ թէ այս Կիրակի առաւօտ, Պոմոնի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ, պատարագ եւ հոգեհանգիստ պիտի կատարուի, ազգային հերոս՝

ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

յիշատակին:

Գաղութը կը հրաւիրուի իր յարգանքի տուրքը մատուցանելու, ողբացեալին անմահ յիշատակին :

×

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի խնամակալութիւնը, Լոնտոնարնակ իր պատուոյ անդամուհի՝

ՏԻԿԻՆ ՇՈՒՇԱՆԻԿ ՊԷՆԼԵԱՆԻ

մահուան քառասունքի, հոգեհանգստեան պաշտօն կատարել պիտի տայ այս Կիրակի, Փարիզի եկեղեցիին մէջ, 15 Րիւ ժան Կուժօն :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները — Պ. Յակոբ Տէր-տէրեան, (Տիթրոյիթ) երկու հարիւր տոլար, Տէր եւ Տիկին Կարպիս Խաչեան 20 Ն. Ֆ. փոխան ծաղիկի՝ Տիկին Գայիանէ Մալաթեանի (Անվերս), եւ տասը Ն. Ֆ. Տիկին Ե. Դարբինեանի մահուան առիթով: Տիկին Պերճուհի Մազըրմեան տասը Ն. Ֆ. փոխան ծաղիկի՝ Տիկին Ե. Դարբինեանի մահուան առիթով, Հիւսնեան ընտանիք յիսուն Ն. Ֆ. փոխան ծաղիկի՝ Տիկին Հիւսնեանի մահուան առթիւ ::



ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### ՅՈՎՍԷՓ ԷՄԻՆ

ԻՐ ԿԵԱՆՔՆ ՈՒ ԱՐԿԱԾՆԵՐԸ

Անգլերէն բնագրէն թարգմանեց

Յ. ԽԱՇՄԱՆԵԱՆ

Հայ ազատագրական շարժման առաջնորդ մեծ հայրենասէրին խառնակեալ կեանքին արկածալից դրուագները:

500 էջ,— Մաքուր տպագրութիւն, լաթակազմ: Գին՝ 12 Ն. Ֆ.:

Դիմել՝

Librairie H. SAMUELIAN

51, Rue Mr.-le-Prince, PARIS (6e)

C. C. P. Paris 1278-35

## ԱԶԴ

Մոնմորանսիի, Անտիյի եւ Սէն Ռաֆայէլի Հանգստեան Տուներուն մէջ, մօտ ատենէն տրամադրելի անկողիններ պիտի ըլլան, բոլոր այն ծերերը որոնք ցարդ արձանագրուած չեն, պէտք է այժմէն ձեռնարկեն պաշտօնատանց մօտ կատարուելիք ձեւակերպութեանց :

Առ այդ դիմել Աղքատախնամի դրասենեակը, 32, Ռիւ տը Թրէվիզ, Փարիզ (9), պէտք եղած տեղեկութիւնները եւ հրահանգները ստանալու համար եւ ճըշդելու ընտրուած հանգստեան տունը :

ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ ԺՈՂՈՎ

ՓԱՐԻԶԻ Հ. Յ. Դ. Շրջ կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու մարմիններու ներկայացուցիչները այս Շաբաթ երեկոյ (3 Դեկտեմբեր) ժամը 20.30ին Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ: 17 Րիւ Պլէօ, մէթրօ Քատէ :

ՕՐԱԿԱՐԳ.— Հ. Յ. Դ. 31րդ Շրջ. ժողովի օրակարգի խնդիրներու քննութիւն: Սրահին ջերմութիւնը ապահովուած է:

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

Ֆ. Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղի նորընտիր վարչութիւնը թէյասեղան մը կազմակերպած է ի պատիւ նախորդ վարչութեան, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ: Կիրակի, Դեկտեմբեր 11ին, ժամը 3ին:

Սիրով կը հրաւիրուին ընկերուհիներ եւ բարեկամներ :

### ՊԱՏԱՐԱԳ

Սէնթ Անթուանի Ս. Թադէոս Եկեղ. Թաղ. Խորհուրդը կը ծանուցանէ թէ այս Կիրակի օր, Թաղիս Ս. Թադէոս եկեղեցւոյն անուան տօնախմբութեան առթիւ, տեղի պիտի ունենայ հանդիսաւոր Ս. Պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն, Թաղիս եւ շրջաններու բնակչութեան համօրէն ննջեցելոց հոգւոյն, մասնաւորապէս Թեմիս նախկին երջանկայիշատակ եւ շինարար Առաջնորդ Տէր Գրիգորիս Եպս. Պալաքեանի, ինչպէս եկեղեցւոյս կնքամօր Օր. Նունիկ Տէր Ղեւոնդեանի ու եկեղեցւոյս շինարարութեան համար սատարողներու հոգւոյն :

Այս առթիւ պիտի պատարագէ եւ քարոզէ Սէն Ժերոմի նորընտիր հոգեւոր հովիւ Արժ. Տէր Եղիշէ Քհնյ. Փանոսեան, նաեւ յաւարտ Ս. պատարագի տեղի պիտի ունենայ աւանդական մատաղի օրհնութիւնն եւ բաշխումը :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Կազմակերպուած Ֆ. Կապ. Խաչի կողմէ՝

ՀԻՆԳՇԱԲԹԻ, ԴԵԿՏԵՄԲԵՐ 29ԻՆ



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ Ծնողաց Միութեան կազմակերպած տարեկան Տօնածառի հանդէսը տեղի պիտի ունենայ՝

Կիրակի, 11 Դեկտեմբեր

Մանրամասնութիւնները յաջորդով :

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Մարսէյլի Նախկին Հայ Արիներու եւ Արենուշներու:

Այս Շաբաթ, ժամը 21էն մինչեւ լոյս : ՔԼԻՒՊԻ շքեղ սրահին մէջ,

51, Rue Grignan

Մասնակցութեամբ Մարսէյլի լաւագոյն նուագախումբին, ղեկավարութեամբ

EDDY TOURNELի

Հայկական տոհմիկ պարեր, հայ արենուշներու կողմէ:

Ծոխ պիւֆէ, մատչելի գիներով եւ թօթիյօն:

Օրուան թագուհի պիտի ընտրուի ամենաշնորհալի եւ վայելուչ օրիորդը, քըւէարկութեամբ :

Զանազան հաճելի անակնկալներ :

### ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

ՄԱՐՏ 12ԻՆ

ՍՈՐՊՈՆԻ ԱՄՓԻԹԱՏՐՈՆԻՆ ՄԷՋ

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Մուրատ – Ռափայէլեան Նախկին Աշակերտաց Միութեան տարեկան պարահանդէսը, Յունուար 29ին :

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

### ԺՈՂՈՎՆԵՐ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Որոնց ներկայ կ'ըլլայ Ամերիկայէն նոր ժամանած՝

ԸՆԿ. Յ. ՏԷՐ-ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ենթակոմիտէները եւ խումբերը այս Շաբաթ, ժամը 21ին, Ահարոնեան ակումբը :

Զաւարեան եւ Վարանդեան, այս Կիրակի կէս օրէ վերջ :

Վռամեան եւ Ընկեր Կարօ, այս Երկուշաբթի իրիկուն :

Անկնունի եւ Համազասպ, Երեքշաբթի, (Դեկտ. 6):

Հայաստան եւ Իշխան, Չորեքշաբթի, (Դեկտ. 7):

Կապոյտ Խաչ, Հինգշաբթի (Դեկտ. 8), կէսօրէ վերջ :

Նոր Սերունդ, Հինգշաբթի (Դեկտ. 8), իրիկուն :

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ Անիէռի մասնաճիւղը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր ընկերուհիները, այսօր Ուրբաթ, ժամը 16ին, Տիկին Աւետիսեանի բնակարանը : Ներկայ կ'ըլլայ Կեդր. վարչութեան ներկայացուցիչը :

ՍԵԲԱՍՏԻՈՅ Մուրատ Ուսումնասիրաց Միութեան Մարսէյլի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Կիրակի ժամը 15ին, Պուլվ. տ'Աթէն, Պար տիւ Կլոպի մէջ : Օրակարգ.— Ա) Հաշուեյարդար: Բ) Վարչութեան ընտրութիւն: Այս առթիւ պիտի քաշուի նաեւ Միութեանս կողմէ կազմակերպուած վիճակահանութիւնը, ներկայութեամբ Միութեանս Բ. սան Պ. Համազասպ Կիւլեանի: Կը խնդրուի անպայման ներկայ ըլլալ :

## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*ՓԱՐԻԶԻ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու մարմիններու ներկայացուցիչները այս Շաբաթ երեկոյ (3 Դեկտեմբեր) ժամը 20·30ին Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ*: 17 Րիւ Պլէօ, մէթրօ Քատէ :

*ՕՐԱԿԱՐԳ.— Հ. Յ. Դ. 31րդ Շրջ. ժողովի օրակարգի խնդիրներու քննութիւն:*

*Սրահին ջերմութիւնը ապահովուած է:*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Այրի Տիկին Հայկուհի Իսկէնտէրեան, Այրի Տիկին Արաքսի Իսկէնտէրեան, Այրի Տիկին Աղաւնի Աբրահամեան, ինչպէս նաեւ Իսկէնտէրեան եւ Աբրահամեան ընտանիքները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն ամէն անոնց, որոնք անձամբ, գրաւոր կամ ծաղկեպսակներով իրենց ցաւակցութիւնը յայտնեցին ողբացեալ*

*ԿԱՐԱՊԵՏ – ԲԱՐԻ ԻՍԿԷՆՏԷՐԵԱՆԻ*

*կսկծալի եւ արկածալի մահուան առթիւ :*

## ՆՈՒԷՐՆԵՐ

*ՈՄՆ Անկէնէն, իր ննջեցեալներուն նուիրական յիշատակին համար երեսուն Ն. Ֆ. կը նուիրէ Ֆ. Կ. Խաչի Անկէնի մասնաճիւղին :*

Տիկին Տիգրանուհի Կարապետեան *իր քրոջ՝ ՏԻԿԻՆ ԳՈՀԱՐ ՎՏԱՐԱՆԴԻԻ անմոռաց յիշատակին համար 25 Ն. Ֆ. կը նուիրէ Ֆ. Կ. Խաչի Անկէնի մասնաճիւղին :*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Պոմոնի Թաղ. Խորհուրդը կը ծանուցանէ թէ այս Կիրակի առաւօտ, Պոմոնի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ, պատարագ եւ հոգեհանգիստ պիտի կատարուի, ազգային հերոս՝*

*ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ*

*յիշատակին:*

*Գաղութը կը հրաւիրուի իր յարգանքի տուրքը մատուցանելու, ողբացեալին անմահ յիշատակին :*

×

*Դպրոցասէր Տիկնանց վարժարանի խնամակալութիւնը, Լոնտոնաբնակ իր պատուոյ անդամուհի՝*

*ՏԻԿԻՆ ՇՈՒՇԱՆԻԿ ՊԷՆԼԵԱՆԻ*

*մահուան քառասունքի, հոգեհանգստեան պաշտօն կատարել պիտի տայ այս Կիրակի, Փարիզի եկեղեցիին մէջ*, 15 Րիւ Ժան Կուժօն :

## ՅՈԲԵԼԵԱՆ
## ՀՐԱՉԵԱՅ ՏԷՐ-ՆԵՐՍԷՍԵԱՆԻ

*Վաստակաւոր տպագրիչ ՀՐԱՉԵԱՅ ՏԷՐ – ՆԵՐՍԷՍԵԱՆԻ յոբելեանը կը կատարուի, այս Կիրակի ժամը 16ին, Ազգ. Տան մէջ*, 32 Րիւ տը Թրէվիզ :

*Կը նախագահէ՝ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ :*

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

*Ֆ. Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղի նորընտիր վարչութիւնը թէյասեղան մը կազմակերպած է ի պատիւ նախորդ վարչութեան, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ: Կիրակի, Դեկտեմբեր 11ին, ժամը 3ին:*

*Սիրով կը հրաւիրուին ընկերուհիներ եւ բարեկամներ :*

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Նախաձեռնութեամբ Մարսէյլի Նախկին Հայ Արիներու եւ Արենուշներու:*

*Այս Շաբաթ, ժամը 21էն մինչեւ լոյս ՔԼԻՒՊԻ չքեղ սրահին մէջ ,*

51, Rue Grignan

*Մասնակցութեամբ Մարսէյլի լաւագոյն նուագախումբին, ղեկավարութեամբ*

**EDDY TOURNEL**ի

*Հայկական տոհմիկ պարեր, հայ արենուշներու կողմէ:*

*Ծոխ պիւֆէ, մատչելի գիներով եւ* քօթիյօն:

Օրուան թագուհի պիտի ընտրուի ամենաշնորհալի եւ վայելուչ օրիորդը, քըւէարկութեամբ :

*Զանազան հաճելի անակնկալներ :*

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Կապոյտ Խաչի Պոմոնի մասնաճիւղը Սայաթ Նովա օփերէթը կը ներկայացնէ Յունուար 21ին, Շաբաթ գիշեր ժամը 21ին, Սահակ–Մեսրոպ սրահին մէջ :*

ՄԱՐՍԷՅԼԻ

### Հ.Մ.Ը.Մ.Ի ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Դեկտեմբեր 10ին, Շաբաթ երեկոյ, ժամը 21էն մինչեւ լոյս :

*Սալոն տը լ'Ալամպրայի մէջ*

*Մանրամասնութիւնները՝ առանձին :*

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ Անիէռի մասնաճիւղը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր ընկերուհիները, այսօր Ուրբաթ, ժամը 16ին, Տիկին Աւետիսեանի բնակարանը : Ներկայ կ'ըլլայ կեդր. վարչութեան ներկայացուցիչը :*

*ՍԵԲԱՍՏԻՈՅ Մուրատ Ուսումնասիրաց Միութեան Մարսէյլի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Կիրակի ժամը 15ին, Պուլվ. տ'Աթէն, Պար տիւ Կլոպի մէջ : Օրակարգ.— Ա) Հաշուեյարդար: Բ) Վարչութեան ընտրութիւն: Այս առթիւ պիտի քաշուի նաեւ Միութեանս կողմէ կազմակերպուած վիճակահանութիւնը, ներկայութեամբ Միութեանս Բ. սան Պ. Համազասպ Կիւլեանի: Կը խնդրուի անպայման ներկայ ըլլալ :*

ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

*ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ Ծնողաց Միութեան կազմակերպած տարեկան Տօնածառի հանդէսը տեղի պիտի ունենայ՝*

Կիրակի, 11 Դեկտեմբեր

*Մանրամասնութիւնները յաջորդով :*

## Հ. Յ. Դ.
### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԺՈՂՈՎՆԵՐ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

*Որոնց ներկայ կ'ըլլայ Ամերիկայէն նոր ժամանած՝*

### ԸՆԿ. Յ. ՏԷՐ-ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ

*ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ենթակոմիտէները եւ խումբերը այս Շաբաթ, ժամը 21ին, Ահարոնեան ակումբը :*

Զաւարեան *եւ* Վարանդեան, *այս Կիրակի կէս օրէ վերջ :*

Վռամեան *եւ* Ընկեր Կարօ, *այս Երկուշաբթի իրիկուն :*

Անկնունի *եւ* Համազասպ, *Երեքշաբթի, (Դեկտ. 6):*

Հայաստան *եւ* Իշխան, *Չորեքշաբթի, (Դեկտ. 7):*

Կապոյտ Խաչ, *Հինգշաբթի (Դեկտ.* 8), *կէսօրէ վերջ :*

Նոր Սերունդ, *Հինգշաբթի (Դեկտ.* 8), *իրիկուն :*

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

*Կազմակերպուած Ֆ. Կապ. Խաչի կողմէ՝*

ՀԻՆԳՇԱԲԹԻ, ԴԵԿՏԵՄԲԵՐ 29ԻՆ

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ
### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

*Լոնտոնի հայրենակիցներէն «Դաշնակ – ցութեան Օր»ուան հանդէսին հանգանակ– ուած 36 անգլ. ոսկի (որուն տասը ոսկին նուիրուած ընկեր Յովհ. Զալըգեանէ) :*

## ՅՈԲԵԼԵԱՆ
### ՀՐԱՉԵԱՅ ՏԷՐ-ՆԵՐՍԷՍԵԱՆԻ

*Վաստակաւոր տպագրիչ ՀՐԱՉԵԱՅ ՏԷՐ – ՆԵՐՍԷՍԵԱՆԻ յոբելեանը կը կա – տարուի , այս Կիրակի ժամը 16ին, Ազգ. Տան մէջ,* 32 Րիւ տը Թրէվիզ :

*Կը նախագահէ՝ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ :*

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

*Ֆ. Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւ– ղի նորընտիր վարչութիւնը թէյասեղան մը կազմակերպած է ի պատիւ նախորդ վարչութեան, Մշակոյթի Տան Ս. Թէհ – լիրեան սրահին մէջ: Կիրակի, Դեկտեմ – բեր 11ին, ժամը 3ին:*

*Սիրով կը հրաւիրուին ընկերուհիներ եւ բարեկամներ :*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Ֆ.Կ.Խաչի Պոմոնի մասնաճիւղը շնորհա– կալութեամբ ստացած է տասը Ն. Ֆ. Տոքթ. Դարբինեանէ :*

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

#### ԺՈՂՈՎՆԵՐ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

*Որոնց ներկայ կ'ըլլայ Ամերիկայէն նոր ժամանած՝*

**ԸՆԿ. Յ. ՏԷՐ-ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ**

Վռամեան *եւ* Ընկեր Կարօ, *այս Երկու – շաբթի իրիկուն :*

Անկնունի *եւ* Համազասպ, *Երեքշաբթի,* (*Դեկտ.* 6) :

Հայաստան *եւ* Իշխան, *Չորեքշաբթի* , (Դեկտ. 7) :

Կապոյտ Խաչ, *Հինգշաբթի* (*Դեկտ.* 8) , *կէսօրէ վերջ :*

Նոր Սերունդ, *Հինգշաբթի* (*Դեկտ.* 8) , *իրիկուն :*

#### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Կապոյտ Խաչի Պոմոնի մասնաճիւղը Սայաթ Նովա օփերէթը կը ներկայացնէ Յունուար 21ին, Շաբաթ գիշեր ժամը 21– ին, Սահակ–Մեսրոպ սրահին մէջ :*

ՄԱՐՍԷՅԼԻ

### Հ.Մ.Ը.Մ.Ի ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Դեկտեմբեր 10ին, Շաբաթ ե – րեկոյ , ժամը 21էն մինչեւ լոյս :

*Սալոն տը լ'Ալամպրայի մէջ*

*Մանրամասնութիւնները՝ առանձին :*

ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՄԲ

ԿԱԹՈՂԻԿՈՍ - ՊԱՏՐԻԱՐՔ

## ԳՐԻԳՈՐ-ՊԵՏՐՈՍ ԺԵ. ԿԱՐԴԻՆԱԼ ԱՂԱՃԱՆԵԱՆԻ

ԵՊԻՍԿՈՊՈՍ ՊԻՏԻ ՕԾՈՒԻ

## Հ. ԿԱՐԱՊԵՏ Վ. ԱՄԱՏՈՒՆԻ

ՄԽԻԹԱՐԵԱՆ

Ընտրեալ Տիտղոսաւոր Եպս. Ամաթուսայ
Եքսարքոս Ֆրանսայի Հայոց
Հայածէս Պատարագը եւ Ձեռնադրութիւնը պիտի կատարուի ,

ԿԻՐԱԿԻ 18 ԴԵԿՏ. ԺԱՄԸ 16ԻՆ

EGLISE SAINT-FERDINAND-DES-TERNES

27, Rue d'Armaillé, Paris (17ᵉ). Métro : Argentine et Ternes

*Արարողութեանց աւարտին, Աջահամբոյր եկեղեցւոյ աւանդատանը մէջ :*

### Ի ՊԱՏԻՒ ԿԱՐԴԻՆԱԼ ԱՂԱՃԱՆԵԱՆԻ

ՆՈՅՆ ՕՐԸ, ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԸ 8.30ԻՆ, ՃԱՇԱՍԵՂԱՆ՝

UNION INTERALLIÉE

33, Rue du Faubourg St.-Honoré. Paris (8ᵉ). Métro : Concorde

*Պատուոյ ճաշասեղանին մասնակցիլ փափաքողները, պէտք է Դեկտեմբեր* 12*էն առաջ արձանագրուին՝*
*դիմելով Ս. Խաչ Եկեղեցւոյ Ընկերակցութեան.—*

10 bis, Rue Thouin, PARIS (5ᵉ). Tél. : ODEon 02-12

ՃԱՇԱԳԻՆ՝ 40 Ն. Ֆ.

## Grande Vente de Charité

### ԲԱՐԵՆՊԱՏԱԿ ՄԵԾ ՎԱՃԱՌՔ

կազմակերպուած
Հ. Բ. Ը. ՄԻՈՒԹԵԱՆ ՏԻԿՆԱՆՑ ՕԺԱՆԴԱԿ ՄԱՐՄՆԻՆ ԿՈՂՄԷ

ՇԱԲԱԹ, ԿԻՐԱԿԻ
ԵՐԿՈՒՇԱԲԹԻ
Դեկտեմբեր 17, 18, 19

Կիրակի ամբողջ օրը: Շաբաթ եւ Երկուշաբթի՝ ժամը 14էն 20,

**ԱԶԳԱՅԻՆ ՏԱՆ ՄԷՋ՝ 32 Rue de Trévise, Métro Cadet**

ԱԺԱՆ ԳԻՆԵՐՈՎ

Ամէն տեսակ ապրանքներ, տրամադրուած փրանսական եւ հայկ. մեծ տու – ներու կողմէ :

ՄԱԿԻ ՌՈՒՖ, ՔՈՐԻԿԱՆ ԼԸԶԻԻՐ եւ ուրիշներ :

### ԵԿԷ՛Ք ԵՒ ԳՆԵՑԷ՛Ք

Ձեր փոքր գնումներով՝ մեծ բարիք կրնաք ընել :

ՔԱՋԱԼԵՐԵՑԷՔ ԱՅՍ ԲԱՐԵՆՊԱՏԱԿ ՁԵՌՆԱՐԿԸ

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

*Տօնածառ Մանուկներու Համար*

Ներկայութեամբ

*ԳԵՐՊ. ՍՐԱՊԻՈՆ ԱՐՔ. ՈՒԼՈՒՀՈՃԵԱՆԻ*

Ընդհ. Աբբայ Մխիթարեան Միաբանութեան

*Կազմակերպուած*

Վարժարանի Ծնողաց Միութեան

*ժրաջան անդամուհիներուն կողմէ: Այս Կիրակի, կէսօրէն ետք ժամը 16.30էն մինչեւ 22 :*

*Գեղարուեստական ճոխ բաժին, ծիծաղաշարժ ներկայացումներ փոքրիկներու կողմէ, արտասանութիւններ, երգեր, զանազան պարեր, խաղեր եւ անակնկալներ :*

*Կաղանդ Պապայի ժամանում, առատ եւ օգտակար նուէրներ :*

ՇՔԱՍԵՂԱՆ ԵՒ ԸՆԹՐԻՔ

*Սիրով հրաւիրուած են բոլոր ծնողքները, բարեկամներ եւ համակիրներ :*

## ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԹԷՅԱՍԵՂԱՆ

*Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Փորթ տ'Իթալիի մասնաճիւղին կողմէ, այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, չրջանիս դպրոցի սրահին մէջ :*

*Սիրով կը հրաւիրուին Ժանթիյիի, Պիսէթրի, Իվրիի, Փորթ տ'Իթալիի եւ չրջաններու բոլոր ընկերուհիները ու համակիր հայրենակիցները:*

Մուտքը ազատ է :

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

*ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Սեւրանի մասնաճիւղը թէյասեղան մը կազմակերպած է, այս Շաբաթ երեկոյ, ժամը 8.30ին:*

*Կը հրաւիրուին բոլոր ընկերուհիները եւ ընկերները, ինչպէս նաեւ բոլոր համակիրները: Ներկայ կ'ըլլան Կեդր. վարչութենէն ներկայացուցիչներ :*

Քաֆէ Հախուտ, Փլաս տը լա Կառ, *(Սեւրան)* :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

*Լսարանական յաջորդ հաւաքոյթը այս Չորեքշաբթի ժամը 21ին՝ Քաֆէ Քաւէի վերնայարկը:*

*Պիտի խօսի Պ. Ս. ԱԼԹՈՒՆԵԱՆ*

*Նիւթն է՝ «Ժամբորդութեան տպաւորութիւններ Մերձաւոր Արեւելքէն» :*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Այրի Տիկին Լ. Գարագոչ, Տէր եւ Տիկ. Լեւոն Գարագոչ, Տէր եւ Տիկին Վահէ Գարագոչ եւ զաւակները, շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր կամ ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր եւ մեծ հօր՝*

*ԼԵՒՈՆ ԳԱՐԱԳՈՉԻ*

*մահուան առթիւ :*

## Հ. Յ. Դ.

ԺՈՂՈՎՆԵՐ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

*Որոնց ներկայ կ'ըլլայ Ամերիկայէն նոր ժամանած՝*

**ԸՆԿ. Յ. ՏԷՐ-ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ**

Անկնունի եւ Համազասպ, *Երեքշաբթի, (Դեկտ. 6) :*

Հայաստան եւ Իշխան, *Չորեքշաբթի, (Դեկտ. 7) :*

Կապոյտ խաչ, *Հինգշաբթի (Դեկտ. 8), կէսօրէ վերջ :*

Նոր Սերունդ, *Հինգշաբթի (Դեկտ. 8), իրիկուն :*

*ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Սարգիս Մինասեան ենթակոմիտէի ժողովը այս Ուրբաթ իրիկուն, ժամը 21ին: Կարեւոր օրակարգ :*

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Կապոյտ Խաչի Պոմոնի մասնաճիւղը Սայաթ Նովա օփերէթը կը ներկայացնէ Յունուար 21ին, Շաբաթ գիշեր ժամը 21ին, Սահակ-Մեսրոպ սրահին մէջ :*

## ԿՈՉ

Ալֆորվիլի եւ Շրջակայքի Հայութեան

*Փարիզի Հայ Մշակոյթի Տան՝ «Սողոմոն Թէհլիրեան» սրահին օժանդակ մարմինն երախտագիտական զգացումներով կը յայտարարէ թէ «Յառաջ»ի միջոցաւ եղած մեր «կոչ»ը արդէն իսկ արձագանք գտած է հանրութեան մէջ: Եւ առաջին առթիւ, Տէր եւ Տիկին Պօղոս Դաւիթեան՝ իրենց հիւրանոցին զարդն եղող մեծարժէք եւ թանկագին հնագիտական իրերն ամբողջական կազմածով միասին կը նուիրեն «Սողոմոն Թէհլիրեան» սրահին :*

*Ի գիտութիւն Ալֆորվիլի եւ շրջակայքի Հայութեան, ուրախութեամբ կը յայտնենք թէ օժանդակ մարմնին անդամներուն թիւը կրկնապատկուած ըլլալով հետեւեալ ստորաբաժանումները կատարուած են որպէսզի կարենանք յաջողութեամբ պսակել այս նուիրական պարտականութիւնը :*

*ԻՒ ՍԷՆ ՓԻԷՌԻ ՇՐՋԱՆ*

*Պ. Պ. Պօղոս Դաւիթեան, Խաչիկ Թիւյսիւզեան, Դաւիթ Մուրատեան, Մկրտիչ Պէրպէրեան, Յովհ. Թիւյսիւզեան :*

Քաղաքապետարանի շրջան

*Պ. Պ. Ստ. Թիրեաքեան, Կար. Սօֆեան, Փ. Ուստուլիկեան, Վարդգէս Գոստիկեան, Անանիկ Անմեան, Պետրոս Ոսկանեան :*

*ՓԼԱՍ ՔԱՐՆՈՅԻ ՇՐՋԱՆ*

*Տիկին Արաքսի Մուրատեան, Օր. Լուսս Մութաֆեան, Պ. Պ. Խաչիկ Ոսկանեան, Կարպիս Բարունեան, Բաբգէն Մութաֆեան :*

*Ուրեմն տուէք ինչ որ կը բխի ձեր սրտէն :*

Փարիզի Հայ Մշակոյթի Տան «Սողոմոն Թէհլիրեան» սրահին օժանդակ մարմին՝

*Նախագահ՝* ՅԱՐ. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ,

*Քարտուղար՝* Պ. ՊԵՏՐՈՍԵԱՆ :

ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՄԲ

ԿԱԹՈՂԻԿՈՍ-ՊԱՏՐԻԱՐՔ

**ԳՐԻԳՈՐ-ՊԵՏՐՈՍ ԺԵ. ԿԱՐԴԻՆԱԼ ԱՂԱՃԱՆԵԱՆԻ**

ԵՊԻՍԿՈՊՈՍ ՊԻՏԻ ՕԾՈՒԻ

## Հ. ԿԱՐԱՊԵՏ Վ. ԱՄԱՏՈՒՆԻ

ՄԽԻԹԱՐԵԱՆ

Ընտրեալ Տիտղոսաւոր Եպս. Ամաթուսայ

Առաքելական Եէսարքոս Ֆրանսայի Հայոց

Հայածէս Պատարագը եւ Ձեռնադրութիւնը պիտի կատարուի,

ԿԻՐԱԿԻ 18 ԴԵԿՏ. ԺԱՄԸ 16ԻՆ

EGLISE SAINT-FERDINAND-DES-TERNES

27, Rue d'Armaillé, Paris (17e). Métro : Argentine et Ternes

*Արարողութեանց աւարտին, Աչհամբոյր եկեղեցւոյ աւանդատրահին մէջ :*

## Ի ՊԱՏԻՒ ԿԱՐԴԻՆԱԼ ԱՂԱՃԱՆԵԱՆԻ

ՆՈՅՆ ՕՐԸ, ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԸ 8.30ԻՆ, ՃԱՇԱՍԵՂԱՆ՝

UNION INTERALLIÉE

33, Rue du Faubourg St.-Honoré. Paris (8e). Métro : Concorde

*Պատուոյ ճաշասեղանին մասնակցիլ փափաքողները, պէտք է Դեկտեմբեր 12էն առաջ արձանագրուին՝ դիմելով Ս. Խաչ Եկեղեցւոյ Ընկերակցութեան.—*

10 bis, Rue Thouin, PARIS (5e). Tél. : ODEon 02-12

ՃԱՇԱԳԻՆ՝ 40 Ն. Ֆ.

*Կարելի է արձանագրուիլ նաեւ Յառաջի մօտ,* Téléph. : **PRO. 86-60**

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

*Ֆ. Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղի նորընտիր վարչութիւնը թէյասեղան մը կազմակերպած է ի պատիւ նախորդ վարչութեան, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ: Կիրակի, Դեկտեմբեր 11ին, ժամը 3ին:*

*Սիրով կը հրաւիրուին ընկերուհիներ եւ բարեկամներ :*

Imprimerie Spéciale du journal « Haratch »

ՄԱՐՍԷՅԼԻ

## Հ.Մ.Ը.Մ.Ի ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Դեկտեմբեր 10ին, Շաբաթ երեկոյ, ժամը 21էն մինչեւ լոյս :

*Սալոն տը լ'Ալամպրայի մէջ*

*Մանրամասնութիւնները՝ առանձին :*

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԹԱՏՐՈՆ — ՍՐԱՀ ՓՕԼ ՖԱԼԱՐԻՔ

21, Rue Yves Toudic, Paris (10e) Métro : République

14 ԴԵԿՏԵՄԲԵՐ, ՉՈՐԵՔՇԱԲԹԻ ԵՐԵԿՈՅ, ԺԱՄԸ 9ԻՆ

*Հովանաւորութեամբ՝ ՀԱՅԿ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀ. ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՏԻԿՆԱՆՑ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻՆ*

*ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ*

# ՄԵՐ ԿԵԱՆՔԸ

## ԳՐԻԳՈՐ - ՎԱՀԱՆԻ

*Թատերգութիւն 4 արար եւ 5 պատկեր, որ 40 հայ հեղինակութիւններու մէջ*

ՇԱՀԱԾ Է ԱՌԱՋՆՈՒԹԵԱՆ ՄՐՑԱՆԱԿ

Հ. Բ. Ը. Միութեան Նիւ-Եորքի Կեդր. Մարմնոյն ձեռնարկած «Արտաւազդ Գույումճեան» թատերագրական մրցումին

*Մասնակցութիւն՝* Տիկին Հ. Խտըշեան - Լա Շասանյեր, Օր. Իրմա Պէրպէրեան, Պ. Պ. Գէորգ Տէրվիշեան, Նուրիան Մարգարեան, Միհրան Մ. Եփրեմեան, Աշոտ Մարտինեան :

*Բեմադրութիւն՝* ՏԻԿԻՆ ԱՆՆԱ ԲՈՒԴԱՂԵԱՆԻ

*ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ խօսքը՝ պարզեւատրուած «ՄԵՐ ԿԵԱՆՔԸ» թատերգութեան մասին :*

*ՄՈՒՏՔԻ ՄԱՏՉԵԼԻ ԳԻՆԵՐ.— Տոմսերը ապահովել սովորական վայրերէն :*

**ՖՐԱՆՍԱԿԱՆ** ֆրանքը 600 տարուան է, արդարեւ 1360, Դեկտ. 5ին Բարին Յովհաննէս Թագաւորը այդ նոր դրամը հրապարակ հանել տուաւ որուն արժէքը 3 կրամ 885 ոսկի էր: Կարգ մը աղբիւրներու համաձայն, իրենց փրկագինը վճարելու եւ ազատ (փռան) արձակուելու համար է որ այդ դրամը հրապարակ ելաւ, ուրկէ եւ իր անունը, բայց աւելի հաւանական է որ անունը գայ Թագաւորին փորագրուած նկարէն «Եոհաննէս տէի Կռասիա ֆրանքորում ռեքս»: Հինգ տարի ետք արդէն, ֆրանքը իր առաջին արժեզրկումը կ'արձանագրէր:

**ԼՐԱԳՐՈՂԻ** մը առաքինութիւնները թըւած է Յովհաննէս ԻԳ. Պապը իտալական մամուլի ընկերակցութեան առջեւ.— «Լրագրողը պէտք է բժիշկի մը փափկանկատութիւնը, գրագէտի մը մտքի ճկունութիւնը, օրէնքի մարդու մը խոհեմութիւնը եւ դաստիարակի մը պատասխանատուութեան գիտակցութիւնը ունենայ»:

33 **ՔԻՒՐՏԵՐ** որոնք ուզած են «քրտական պետութիւն» մը հիմնել Սուրիոյ մէջ, այդ ամբաստանութեամբ դատարան քաշուած են: Դամասկոսի զինուորական ատեանը ցկեանս բանտարկութիւն պահանջած է 13ին համար եւ 5էն քսան տարի արգելափակում միւսներուն համար:

**ՔՈՆԿՈՅԻ** արեւելեան նահանգը անջատուեցաւ Լէոփոլտվիլի կառավարութենէն: Որոշումը տուաւ Լումումպայի նախկին քարտուղարը՝ Պիրհար Սալիւմիւ: Գնդապետ Մոպիւթիւ սպառնաց Նեղոսի ջուրերը կտրել, եթէ երբեք Արաբ. Միացեալ Հանրապետութիւնը զինուորական օժանդակութիւն ընծայէ անջատեալ գաւառին:

**ԿՈՆՔՈՒՐԻ** կաճառը որոշեց մրցանակ չյանձնել 1960ի համար: Ինչպէս գրած էինք, Վենթիլա Հորիա հրաժարած էր մրցանակէն, իրեն դէմ եղած ամբաստանութիւններուն առթիւ:

**ԷՆԹԵՌԱԼԻԷ** մրցանակը տրուած է երկու գրագէտներու Հանրի Միւլըր՝ եւ Ժան Փորթիլ, որոնք տասը քուէարկութենէ ետք նոյնքան ձայն ստացան (5 եւ 5):



## ԼՐԱՏՈՒ ԱՐՈՒԵՍՏԻ

Պ. Ժիրայր Սերգոյեան պիտի մասնակցի, Մարսէյլի օփերային, «Ռոմէօ եւ Ժիւլիէթ»ի երկու ներկայացումներուն, այս Ուրբաթ երեկոյ եւ այս Կիրակի:

### ԹԷՅԱՍԵՂԱՆ

**ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ** Սեւրանի մասնաճիւղը թէյասեղան մը կազմակերպած է, այս Շաբաթ երեկոյ, ժամը 8·30ին:

Կը հրաւիրուին բոլոր ընկերուհիները եւ ընկերները, ինչպէս նաեւ բոլոր համակիրները: Ներկայ կ'ըլլան Կեդր. վարչութենէն ներկայացուցիչներ:

Քաֆէ Հաիուտ, փլաս տը լա Կառ, (Սեւրան):

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանական յաջորդ հաւաքոյթը այս Չորեքշաբթի ժամը 21ին՝ Քաֆէ Քատէի վերնայարկը:

Պիտի խօսի Պ. Ս. ԱԼԹՈՒՆԵԱՆ

Նիւթն է՝ «Ժամբորդութեան տպաւորութիւններ Մերձաւոր Արեւելքէն»:

## Հ. Յ. Դ.

### ԺՈՂՈՎՆԵՐ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Որոնց ներկայ կ'ըլլայ Ամերիկայէն նոր ժամանած՝

**ԸՆԿ. Յ. ՏԷՐ-ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ**

Հայաստան եւ Իշխան, Չորեքշաբթի, (Դեկտ. 7):

Կապոյտ խաչ, Հինգշաբթի (Դեկտ. 8), կէսօրէ վերջ:

Բոլոր Կապոյտ Խաչուհիներէն կը խնդրուի ներկայ ըլլալ այս շատ կարեւոր ժողովին:

Նոր Սերունդ, Հինգշաբթի (Դեկտ. 8), իրիկուն:

Բոլոր Նոր Սերնդականներէն կը խնդրուի ներկայ ըլլալ այս շատ կարեւոր ժողովին:

**ԱԼՖՈՐՎԻԼ**.— Հ. Յ. Դ. Սարգիս Մինասեան ենթակոմիտէի ժողովը այս Ուրբաթ իրիկուն, ժամը 21ին: Կարեւոր օրակարգ:

**ՎԱԼԱՆՍ**.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի ժողովը այս Շաբաթ, ժամը 20·30ին, Ահարոնեան ակումբը: Կարեւոր օրակարգ: Ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է:

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉ

#### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐ

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնս թելադրուած իր 17րդ պատգամ. ժողովէն, ձեռնարկած է իր շարքերը երիտասարդացնելու կարեւոր գործին, առ այդ տեղի պիտի ունենան մօտ ժամանակէն շարք մը դասախօսութիւններ Մշակոյթի Տան մէջ, Տիկին ՀՈՒՐԻ ԻՓԷԿԵԱՆ-ՊՈՒՏԱՔԵԱՆԻ կողմէ հայ երիտասարդուհիներու համար:

Փափաքողները այժմէն կրնան արձանագրուիլ:

Դիմել՝ 17 Րիւ Պլէօ, Մշակոյթի Տան, Կապոյտ Խաչի գրասենեակը, Չորեքշաբթի եւ Շաբաթ օրերը ժամը 16–19:

Ֆ. Կ. ԽԱՉԻ ՇՐՋ. ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Կապոյտ Խաչի Պոմոնի մասնաճիւղը Սայաթ Նովա օփերէթը կը ներկայացնէ Յունուար 21ին, Շաբաթ գիշեր ժամը 21ին, Սահակ-Մեսրոպ սրահին մէջ:

### ԿՈՉ

Ալֆորվիլի եւ Շրջակայքի Հայութեան

Փարիզի Հայ Մշակոյթի Տան՝ «Սողոմոն Թէհլիրեան» սրահին օժանդակ մարմինն երախտագիտական զգացումներով կը յայտարարէ թէ «Յառաջ»ի միջոցաւ եղած մեր «կոչ»ը արդէն իսկ արձագանք գտած է հանրութեան մէջ: Եւ առաջին առիթով, Տէր եւ Տիկին Պօղոս Դաւիթեան՝ իրենց հիւրանոցին զարդն եղող մեծարժէք եւ թանկագին հնագիտական իրերն ամբողջական կազմածով միասին կը նուիրեն «Սողոմոն Թէհլիրեան» սրահին:

Ի գիտութիւն Ալֆորվիլի եւ շրջակայքի Հայութեան, ուրախութեամբ կը յայտնենք թէ օժանդակ մարմնին անդամներուն թիւը կրկնապատկուած ըլլալով հետեւեալ ստորաբաժանումները կատարուած են որպէսզի կարենանք յաջողութեամբ պսակել այս նուիրական պարտականութիւնը:

**ԻՆ ՍԷՆ ՓԻԷՌԻ ՇՐՋԱՆ**

Պ. Պ. Պօղոս Դաւիթեան, Խաչիկ Թիւլսիւզեան, Դաւիթ Մուրատեան, Մկրտիչ Պէրպէրեան, Յովհ. Թիւլսիւզեան եւ Տիկին Ժանեթ:

Քաֆաղա․․․ դպրոցի շրջան

Պ. Պ. Ստ. Թիրեաքեան, Կար. Սօֆեան, Փ. Ուստուպիկեան, Վարդգէս Գոստիկեան, Անանիկ Անանեան, Պետրոս Ոսկանեան:

**ՓԼԱՍ ՔԱՐՆՈՅԻ ՇՐՋԱՆ**

Տիկին Արաքսի Մուրատեան, Օր. Լուսա Մութաֆեան, Պ. Պ. Խաչիկ Ոսկանեան, Կարպիս Բարուճեան, Բարգէն Մութաֆեան:

Ուրեմն տուէք ինչ որ կը բխի ձեր սրտէն:

Փարիզի Հայ Մշակոյթի Տան «Սողոմոն Թէհլիրեան» սրահին օժանդակ մարմին՝

Նախագահ՝ ՅԱՐ. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ, Քարտուղար՝ Պ. ՊԵՏՐՈՍԵԱՆ:



### ԹԷՅԱՍԵՂԱՆ

Ֆ. Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղի նորընտիր վարչութիւնը թէյասեղան մը կազմակերպած է ի պատիւ նախորդ վարչութեան, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ: Կիրակի, Դեկտեմբեր 11ին, ժամը 3ին:

Սիրով կը հրաւիրուին ընկերուհիներ եւ բարեկամներ:

### ԹԷՅԱՍԵՂԱՆ

Կապոյտ Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղի վարչութիւնը թէյասեղան մը կազմակերպած է ի պատիւ նախկին վարչութեան, այս Շաբաթ իրիկուն, ժամը 20·30ին Պ. Մկրեանի սրճարանը, Րիւ Էթիէն Տոլէ:

### ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԹԷՅԱՍԵՂԱՆ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Փորթ տ'Իթալիի մասնաճիւղին կողմէ, այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Հրջանիս դպրոցի սրահին մէջ:

Սիրով կը հրաւիրուին Ժանթիյիի, Պիսէթրի, Իվրիի, Փորթ տ'Իթալիի եւ շրջաններու բոլոր ընկերուհիները ու համակիր հայրենակիցները:

Մուտքը ազատ է:

### ՏՕՆԱԾԱՌ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի տօնածառի հանդէսը տեղի պիտի ունենայ 18 Դեկտեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15ին վարժարանին մէջ:

Կը հրաւիրուին ծնողքները եւ համակիրները:



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

*Տօնածառ Մանուկներու Համար*

Ներկայութեամբ

*ԳԵՐՊ. ՍՐԱՊԻՈՆ ԱՐՔ. ՈՒԼՈՒՀՈՃԵԱՆԻ*

Ընդհ. Աբբայ Մխիթարեան Միաբանութեան

*Կազմակերպուած*

Վարժարանի Ծնողաց Միութեան

*Ժրաջան անդամուհիներուն կողմէ:*
*Այս Կիրակի, կէսօրէն ետք ժամը 16·30էն մինչեւ 22:*

*Գեղարուեստական ճոխ բաժին, ծիծաղաշարժ ներկայացումներ փոքրիկներու կողմէ, արտասանութիւններ, երգեր, զանազան պարեր, խաղեր եւ անակնկալներ:*

*Կաղանդ Պապայի ժամանում, առատ եւ օգտակար նուէրներ:*

ՇՔԱՍԵՂԱՆ ԵՒ ԸՆԹՐԻՔ

*Սիրով հրաւիրուած են բոլոր ծնողքները, բարեկամներ եւ համակիրներ:*

## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*ՓԱՐԻԶԻ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու մարմիններու ներկայացուցիչները այս Շաբաթ երեկոյ ժամը 20·30ին, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ, 17 Րիւ Պլէօ, մէթրօ Քատէ:*

(*Շրջ. նախորդ ժողովին*):

## ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԹԷՅԱՍԵՂԱՆ

*Կազմակերպուած Ց. Կ. Խաչի Փորթ տ'Իթալիի մասնաճիւղին կողմէ, այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, շրջանիս դպրոցի սրահին մէջ:*

*Սիրով կը հրաւիրուին Ժանթիյիի, Պիսէթրի, Իվրիի, Փորթ տ'Իթալիի եւ շրջաններու բոլոր ընկերուհիները ու համակիր հայրենակիցները:*

Մուտքը ազատ է:

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

*Կապոյտ Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղի վարչութիւնը թեյասեղան մը կազմակերպած է ի պատիւ նախկին վարչութեան, այս Շաբաթ իրիկուն, ժամը 20·30ին Գ. Մկրեանի սրճարանը, Րիւ Էթիէն Տոլէ:*

## ՔԱՀԱՆԱՅԱԿԱՆ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԻՒՆ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

*Վալանսի Ազգ. Միութիւնը եւ Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը ծանուցանեն թէ այս Կիրակի քահանայական ձեռնադրութիւն պիտի կատարուի, յանձին Պ. Սարգիս Վարդանեանի Կաթողիկոսական Պատուիրակ Սերովբէ Եպիսկ. Մանուկեանի ձեռամբ եւ մասնակցութեամբ երեք քահանայ հայրերու:*

*Ժամը 8ին առաւօտեան ժամերգութիւն:*
10ին *Ս. Պատարագ:*
10·30ին *Օծում:*

*Այս հանդիսաւոր Օծումին կը հրաւիրուին գաղութիս եւ շրջակայից բոլոր հայրենակիցները:*

## « ՅԱՌԱՋ »Ի ԲԱՐԳԱՒԱՃՄԱՆ ՀԱՄԱՐ

*Օպոնէն Պ. Ժամկոչեան տասը Ն. Ֆ.:*

## Հ. Յ. Դ.

### ԺՈՂՈՎՆԵՐ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

*Որոնց ներկայ կ'ըլլայ Ամերիկայէն նոր ժամանած՝*

### ԸՆԿ. Յ. ՏԷՐ-ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ

Հայաստան եւ Իշխան, *Զորեքշաբթի*, (Դեկտ. 7):

Կապոյտ Խաչ, *Հինգշաբթի* (*Դեկտ.* 8), *կէսօրէ վերջ:*

*Բոլոր Կապոյտ Խաչուհիներէն կը խնդրուի ներկայ ըլլալ այս շատ կարեւոր ժողովին:*

Նոր Սերունդ, *Հինգշաբթի* (*Դեկտ.* 8), *իրիկուն:*

*Բոլոր Նոր Սերնդականներէն կը խնդրուի ներկայ ըլլալ այս շատ կարեւոր ժողովին:*

*ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Սարգիս Մինասեան ենթակոմիտէի ժողովը այս Ուրբաթ իրիկուն, ժամը 21ին: Կարեւոր օրակարգ:*

*ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի ժողովը այս Շաբաթ, ժամը 20·30ին, Ահարոնեան ակումբը: Կարեւոր օրակարգ: Ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է:*

## ՏՕՆԱԾԱՌ

*Դպրոցասէր Տիկնանց վարժարանի տօնածառի հանդէսը տեղի պիտի ունենայ 18 Դեկտեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15ին վարժարանին մէջ:*

*Կը հրաւիրուին ծնողքները եւ համակիրները:*

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

*Ց. Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղի նորընտիր վարչութիւնը թէյասեղան մը կազմակերպած է ի պատիւ նախորդ վարչութեան, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ: Կիրակի, Դեկտեմբեր 11ին, ժամը 3ին:*

*Սիրով կը հրաւիրուին ընկերուհիներ եւ բարեկամներ:*

## ՄԱՐՍԷՅԼԻ Հ.Մ.Ը.Մ.Ի ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Այս Շաբաթ իրիկուն մինչեւ լոյս

**Salons de l'Alhambra**

340, Bd. Chave

*Նուագախումբ.—*

**Robert Gonzalez**

*Պիտի ընտրուի երեկոյեան գեղեցկուհին որ պիտի կոչուի «Հ. Մ. Ը. Մ.ի գեղեցկուհի» եւ պիտի արժանանայ կանանց սափրիչի միջազգ. ախոյեան տիրացած Պ. ՌԸՆԷ ԱԹՈՅԵԱՆԻ վարսայարդարումին:*

*Կանխաւ ապահովեցէք ձեր տոմսերը եւ սեղանները Հ.Մ.Ը.Մ.ի անդամներէն:*

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՄԲ ԿԱԹՈՂԻԿՈՍ-ՊԱՏՐԻԱՐՔ ԳՐԻԳՈՐ-ՊԵՏՐՈՍ ԺԵ. ԿԱՐԴԻՆԱԼ ԱՂԱՃԱՆԵԱՆԻ

ԵՊԻՍԿՈՊՈՍ ՊԻՏԻ ՕԾՈՒԻ

## Հ. ԿԱՐԱՊԵՏ Վ. ԱՄԱՏՈՒՆԻ

ՄԽԻԹԱՐԵԱՆ

Ընտրեալ Տիտղոսաւոր Եպս. Ամաթուսայ
Առաքելական Էքսարքոս Ֆրանսայի Հայոց

Հայածէս Պատարագը եւ Ձեռնադրութիւնը պիտի կատարուի,

ԿԻՐԱԿԻ 18 ԴԵԿՏ. ԺԱՄԸ 16ԻՆ

ECLISE SAINT-FERDINAND-DES-TERNES

27, Rue d'Armaillé, Paris (17ᵉ). Métro : Argentine et Ternes

*Արարողութեանց աւարտին, Աջհամբոյր եկեղեցւոյ աւանդատահին մէջ:*

## Ի ՊԱՏԻՒ ԿԱՐԴԻՆԱԼ ԱՂԱՃԱՆԵԱՆԻ

ՆՈՅՆ ՕՐԸ, ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԸ 8·30ԻՆ, ՃԱՇԱՍԵՂԱՆ՝

UNION INTERALLIÉE

33, Rue du Faubourg St.-Honoré. Paris (8ᵉ). Métro : Concorde

*Պատուոյ ճաշասեղանին մասնակցիլ փափաքողները, պէտք է Դեկտեմբեր 12էն առաջ արձանագրուին՝*

*դիմելով Ս. Խաչ Եկեղեցւոյ Ընկերակցութեան.—*

10 bis, Rue Thouin, PARIS (5ᵉ). Tél. : ODEon 02-12

C. C. P. Paris 8351-30

ՃԱՇԱԳԻՆ՝ 40 Ն. Ֆ.

*Կարելի է արձանագրուիլ նաեւ Յառաջի մօտ,* Téléph. : **PRO. 86-60**

Այրի Տիկին Նեկտար Սօֆեան, Տէր եւ Տիկին Վօժանի, Տէր եւ Տիկին Կ. Սօֆեան եւ զաւակները, Պ. Ս. Մարուքեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Պետրոս Կոտոյեան եւ զաւակը, Այրի Տիկին Աղաւնի Փափազեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Զ. Յակոբեան եւ զաւակները, Պ. Սեդրակ Կարապետեան եւ իր զաւակները, Տէր եւ Տիկին Մուսաքօ եւ զաւակները, Տէր Տիկին Բարաքեան եւ զաւակները, սրտի խոր ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, եղբօր եւ ազգականին՝

ՅԱԿՈԲ ՍՕՖԵԱՆԻ

արկածալի մահը,

53 տարեկան հասակին մէջ:

Մահազդ ղրկուած չըլլալով, կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

42 Րիւ Տօֆթ. Ռեպաբել (Լիոն):

## ՄԱՐՍԷՅԼԻ Հ.Մ.Ը.Մ.Ի

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Այս Շաբաթ իրիկուն մինչեւ լոյս

**Salons de l'Alhambra**

340, Bd. Chave

Նուագախումբ.—

**Robert Gonzalez**

Պիտի ընտրուի երեկոյեան գեղեցկուհին որ պիտի կոչուի «Հ.Մ.Ը.Մ.ի գեղեցկուհի» եւ պիտի արժանանայ կանանց սափրիչի միջազգ. տիտղոսին տիրացած Պ. ԹԸՆԷ ԱԹՈՅԵԱՆԻ վարսայարդարումին:

Կանխաւ ապահովեցէք ձեր տոմսերը եւ սեղանները Հ.Մ.Ը.Մ.ի անդամներէն:

## ՔԱՀԱՆԱՅԱԿԱՆ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԻՒՆ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Վալանսի Ազգ. Միութիւնը եւ Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը կը ծանուցանեն թէ այս Կիրակի քահանայական ձեռնադրութիւն պիտի կատարուի, յանձին Պ. Սարգիս Վարդանեանի Կաթողիկոսական Պատուիրակ Սերովբէ Եպիսկ. Մանուկեանի ձեռամբ եւ մասնակցութեամբ երեք քահանայ հայրերու եւ կնքահայրութեամբ Պ. ՌՈՒԲԷՆ ՏԱԼՔԻՒՓԷՅԵԱՆԻ:

Ժամը 8ին առաւօտեան ժամերգութիւն:

10ին Ս. Պատարագ:

10.30ին Օծում:

Այս հանդիսաւոր Օծումին կը հրաւիրուին գաղութիս եւ շրջակայից բոլոր հայրենակիցները:

## ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԹԷՅԱՍԵՂԱՆ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Փորթ տ'Իթալիի մասնաճիւղին կողմէ, այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, շրջանիս դպրոցի սրահին մէջ:

Սիրով կը հրաւիրուին Ժանթիյիի, Պիսէթրի, Իվրիի, Փորթ տ'Իթալիի եւ շրջաններու բոլոր ընկերուհիները ու համակիր հայրենակիցները:

Մուտքը ազատ է:

## ԾԱԽՈՒ Է

Կոկիկ յարկաբաժին մը արեւոտ, 18րդ թաղամասին մէջ, մէթրօ Լամարք կամ Ժիւլ Ժօֆրէն: Մուտք, երկու սենեակ, խոհանոց, արտաքնոց, լուացարան, հեռաձայն, ջուր, կազ, ելեկտրականութիւն: Մատչելի գին: Դիմել խմբագրութեան:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

Պ. Յակոբ Նիկողոսեան Պուա Քոլոմպէն յիսուն Ն. Ֆ. կը նուիրէ Ազգային հերոս Ս. Թէհլիրեանի յիշատակին: (Ստանալ «Յառաջ»էն):

## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ ԺՈՂՈՎ

ՓԱՐԻԶԻ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու մարմիններու ներկայացուցիչները այս Շաբաթ երեկոյ ժամը 20.30ին, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ, 17 Րիւ Պլէօ, մէթրօ Քատէ:

(Շար. նախորդ ժողովին):

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Տօնածառ Մանուկներու համար

Ներկայութեամբ

ԳԵՐՊ. ՍՐԱՊԻՈՆ ԱՐՔ. ՈՒԼՈՒՀՈՃԵԱՆԻ

Ընդհ. Աբբայ Մխիթարեան Միաբանութեան

Կազմակերպուած Վարժարանի Ծնողաց Միութեան

Ժրաջան անդամուհիներուն կողմէ:

Այս Կիրակի, կէսօրէն ետք ժամը 16.30էն մինչեւ 22:

Գեղարուեստական ճոխ բաժին, ծիծաղաշարժ ներկայացումներ փոքրիկներու կողմէ, արտասանութիւններ, երգեր, զանազան պարեր, խաղեր եւ անակնկալներ:

Կաղանդ Պապայի ժամանում, առատ եւ օգտակար նուէրներ:

ՇՔԱՍԵՂԱՆ ԵՒ ԸՆԹՐԻՔ

Սիրով հրաւիրուած են բոլոր ծնողքները, բարեկամներ եւ համակիրներ:

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

Ֆ. Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղի նորընտիր վարչութիւնը թէյասեղան մը կազմակերպած է ի պատիւ նախորդ վարչութեան, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ: Կիրակի, Դեկտեմբեր 11ին, ժամը 3ին:

Սիրով կը հրաւիրուին ընկերուհիներ եւ բարեկամներ:

## ՇԱՒԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Հանդիսաւոր տօնակատարութիւն Շաւիլի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ օծման Գ. տարելիցին առիթով: Կիրակի, Դեկտեմբեր 18:

Կը պատարագէ եւ կը քարոզէ Կաթ. Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ: Բազմաձայն երգեցողութիւնները, Մայր եկեղեցւոյ երգիչներուն կողմէ, ղեկավարութեամբ երաժշտապետ Նշան Սերգոյեանի:

Յաւարտ Ս. պատարագի, մասնաւոր հոգեհանգիստ, եկեղեցւոյ վերակառուցման մասնակցող բոլոր նուիրատուներու ննջեցելոց հոգւոց ի յիշատակ:

Կը հրաւիրուի հաւատացեալ ժողովուրդը անխտիր:

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

Կապոյտ Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղի վարչութիւնը թեյասեղան մը կազմակերպած է ի պատիւ նախկին վարչութեան, այս Շաբաթ իրիկուն, ժամը 20.30ին Պ. Մկրեանի սրճարանը, Րիւ Էթիէն Տոլէ:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. Կ. ԽԱՉԻ Շրջ. վարչութիւնը ժողովի կը հրաւիրէ Փարիզեան շրջանի բոլոր մասնաճիւղերու վարչութեանց ներկայացուցիչները այս Երկուշաբթի կէսօրէ ետք ժամը չորսին, Մշակոյթի Տան Թէհլիրեան սրահին մէջ: Ջերմութիւնը ապահովուած է:

## Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի ժողովը այս Շաբաթ, ժամը 20.30ին, Ահարոնեան ակումբը: Կարեւոր օրակարգ: Ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է:

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԹԱՏՐՈՆ — ՍՐԱՀ ՓՕԼ ՖԱԼԱՐԻՔ

21, Rue Yves Toudic, Paris (10e) Métro : République

14 ԴԵԿՏԵՄԲԵՐ, ՉՈՐԵՔՇԱԲԹԻ ԵՐԵԿՈՅ, ԺԱՄԸ 9ԻՆ

Հովանաւորութեամբ՝ ՀԱՅԿ. ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀ. ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՏԻԿՆԱՆՑ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻՆ

ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ

## ՄԵՐ ԿԵԱՆՔԸ

ԳՐԻԳՈՐ - ՎԱՀԱՆԻ

Թատերգութիւն 4 արար եւ 5 պատկեր, որ 40 հայ հեղինակութիւններու մէջ

ՇԱՀԱԾ Է ԱՌԱՋՆՈՒԹԵԱՆ ՄՐՑԱՆԱԿ

Հ. Բ. Ը. Միութեան Նիւ-Եորքի Կեդր. Մարմնոյն ձեռնարկած «Արտաւազդ Գույումճեան» թատերագրական մրցումին

Մասնակցութիւն՝ Տիկին Հ. Խտըշեան - Լա Շասանյեր, Օր. Իրմա Պէրպէրեան, Պ. Պ. Գէորգ Տէրվիշեան, Նուրհան Մարգարեան, Միհրան Մ. Եփրեմեան, Աշոտ Մարտինեան:

Բեմադրութիւն՝ ՏԻԿԻՆ ԱՆՆԱ ԲՈՒԴԱՂԵԱՆԻ

ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ խօսքը՝ պարզեւատրուած «ՄԵՐ ԿԵԱՆՔԸ» թատերգութեան մասին:

ՄՈՒՏՔԻ ՄԱՏՉԵԼԻ ԳԻՆԵՐ.— Տոմսերը ապահովել սովորական վայրերէն:

## ՁԵՐ ԲՈԼՈՐ ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ

ՄԷԿ ՀԱՍՑԷ

## OFFICE INTERNATIONAL DES VOYAGES

**36, Galerie Monpensier, PARIS**

**RIC. 54-30 et 72-80**

ՕԴԱՆԱՒ, ԵՐԿԱԹՈՒՂԻ, ՆԱՒ: ՎԻԶԱ ԵՒ ՏՈՄՍԵՐՈՒ ԲՈԼՈՐ ՁԵՒԱԿԵՐՊՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՁՐԻ, ԿԸ ԲԱՒԷ ՀԵՌԱՁԱՅՆԵԼ

Բոլոր տոմսերու գիները պաշտօնական գիներն են, ոչ մէկ յաւելում:

ՕԴԱՆԱՒՈՎ ԵՂԱԾ ԿԱՐԳ ՄԸ ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆՆԵՐ Կ'ԱՊԱՀՈՎԵՆ ՆԱԵՒ ՁՐԻ ԲՆԱԿԱՐԱՆ ԵՒ ՃԱՇ ԶԱՆԱԶԱՆ ՔԱՂԱՔՆԵՐՈՒ ՄԷՋ

ԴԷՊԻ ՀԱՅԱՍՏԱՆ

Օդանաւով ճամբորդութեանց համար մասնաւոր դիւրութիւններ

9 Օր ձրի բնակութիւն՝ Երեւան

Մեկնումէն առաջ՝ կանխավճար՝ 258.81 Ն. Ֆ.: Կարելի է ապառիկ վճարել՝ տասը առ հարիւր մեկնումէն առաջ, մնացեալը՝ 3էն 12 ամիսէն:

Բոլոր մանրամասնութիւններու համար դիմել անձամբ կամ հեռաձայնել՝

36, GALERIE MONPENSIER

(Jardin du Palais Royal)

Tél. : RIC. 54-30 et 72-80

Մասնաւոր հաշիւ կը բացուի այն ընկերութիւններուն համար, որոնք կանոնաւորապէս կը ճամբորդեն:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Սէնթ Անթուանի, Ս. Թադէոս եկեղեցւոյ Թաղ. Խորհուրդս շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ գումարները փոխան ծաղկեպսակի, ողբացեալ տարաբախտ* Գրիգոր Ինճեճեանի *մահուան առթիւ։ (Սէն Ժերմէն) Պ. Պ. Կարապետ Աճէմեանէ տասը Ն. Ֆ., Օնիկ Մակարեանէ քսան Ն. Ֆ., Մանուկ Մակարեանէ տասը Ն. Ֆ., Ժորժ Մակարեանէ տասը Ն. Ֆ., Արամ Ինճեանէ հինգ եկեղեցւոյ, հինգ դպրոցի եւ հինգ աղքատաց։*

*Սէնթ Անթուանէն Պ. Մինաս Փափուճեանէ տասը Ն. Ֆ., Սէնթ Անթուանի Թաղական խորհուրդիս կազմը իր ցաւակցութիւնները կը յայտնէ հանգուցեալի եղբօր Պ. Նազարէթի եւ ընտանեկան պարագաներուն։*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Տէր եւ Տիկին Հմայեակ Աղապալեանց կը փնտռեն վարձու սենեակ մը, խոհանոցի կարելիութեամբ, կահաւորուած կամ ոչ։*

*Գրել Ռազմիկներու Միութեան հասցէին,*

Association des Anciens Combattants
32, Rue de Trévise, PARIS (9e)

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## Հ. Յ. Դ.

### ԺՈՂՈՎՆԵՐ ԿԵԴՐ. ՖՐԱՆՍԱՅԻ ՄԷՋ

*Արեւմտեան Եւրոպայի Հ. Յ. Դ. Կ. Կոմիտէն ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ հետեւեալ շրջաններու ընկերները, որոնց ներկայ կ՚ըլլայ Ամերիկայէն նոր ժամանած՝*

### ԸՆԿ. Յ. ՏԷՐ-ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ

*ՔՐԻՍՏԱՓՈՐ, այս Երկուշաբթի գիշեր, ժամը 8·30ին։*

*ԵՕԹՆԵՂԲԱՅՐԵԱՆ, այս Երեքշաբթի իրիկուն, ժամը 8·30ին։*

*ՎԱՐԱՆԴԵԱՆ, այս Չորեքշաբթի իրիկուն ժամը 8·30ին։*

*ԴԱՇՏ եւ ԱՆԴՐԱՆԻԿ միասնաբար Տէսինի մէջ, այս Հինգշաբթի իրիկուն, ժամը 8·30ին։*

*ԱՆԻ, այս Ուրբաթ իրիկուն, ժամը 8·30ին։*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*Ֆ. Կ. ԽԱՉԻ Շրջ. վարչութիւնը ժողովի կը հրաւիրէ Փարիզեան շրջանի բոլոր մասնաճիւղերու վարչութեանց ներկայացուցիչները այս Երկուշաբթի կէսօրէ ետք ժամը չորսին, Մշակոյթի Տան Թէհլիրեան սրահին մէջ։ Ջերմութիւնը ապահովուած է։*

ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՄԲ

ԿԱԹՈՂԻԿՈՍ-ՊԱՏՐԻԱՐՔ

## ԳՐԻԳՈՐ-ՊԵՏՐՈՍ ԺԵ. ԿԱՐԴԻՆԱԼ ԱՂԱՃԱՆԵԱՆԻ

ԵՊԻՍԿՈՊՈՍ ՊԻՏԻ ՕԾՈՒԻ

## Հ. ԿԱՐԱՊԵՏ Վ. ԱՄԱՏՈՒՆԻ

ՄԽԻԹԱՐԵԱՆ

Ընտրեալ Տիտղոսաւոր Եպս. Ամաթուսայ
Առաքելական Եքսարքոս Ֆրանսայի Հայոց
Հայածէս Պատարագը եւ Ձեռնադրութիւնը պիտի կատարուի,

ԿԻՐԱԿԻ 18 ԴԵԿՏ. ԺԱՄԸ 16ԻՆ

EGLISE SAINT-FERDINAND-DES-TERNES
27, Rue d'Armaillé, Paris (17e). Métro : Argentine et Ternes

*Արարողութեանց աւարտին, Աջհամբոյր եկեղեցւոյ աւանդատանը մէջ։*

### Ի ՊԱՏԻՒ ԿԱՐԴԻՆԱԼ ԱՂԱՃԱՆԵԱՆԻ

ՆՈՅՆ ՕՐԸ, ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԸ 8·30ԻՆ, ՃԱՇԱՍԵՂԱՆ՝
UNION INTERALLIÉE
33, Rue du Faubourg St.-Honoré. Paris (8e). Métro : Concorde

*Պատուոյ ճաշասեղանին մասնակցիլ փափաքողները, պէտք է Դեկտեմբեր 12էն առաջ արձանագրուին՝*

*դիմելով Ս. Խաչ Եկեղեցւոյ Ընկերակցութեան.—*

10 bis, Rue Thouin PARIS (5e). Tél. : ODEon 02-12
C. C. P. Paris 8351-30

ՃԱՇԱԳԻՆ՝ 40 Ն. Ֆ.

*Կարելի է արձանագրուիլ նաեւ Յառաջի մօտ,* Téléph. : **PRO. 86-60**

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Ֆ. Կ. ԽԱՉԻ Մարսէյլի մասնաճիւղը «Մանուկներու Օրը» պիտի տօնէ Յունուար ութին, Ահարոնեան Ակումբին մէջ։*

*ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ*

ՄԱՅՐԵՐՈՒ ՓԱՌԱՏՕՆ
ՅՈՒՆԻՍ 13ԻՆ

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԹԱՏՐՈՆ — ՍՐԱՀ ՓՈԼ ՖԱԼԱՐԻՔ

21, Rue Yves Toudic, Paris (10e) Métro : République
14 ԴԵԿՏԵՄԲԵՐ, ՉՈՐԵՔ ՇԱԲԹԻ ԵՐԵԿՈՅ, ԺԱՄԸ 9ԻՆ

*Հովանաւորութեամբ՝ ՀԱՅԿ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀ. ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՏԻԿՆԱՆՑ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻՆ*

*ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ*

# ՄԵՐ ԿԵԱՆՔԸ

### ԳՐԻԳՈՐ - ՎԱՀԱՆԻ

*Թատերգութիւն* 4 *արար եւ* 5 *պատկեր, որ* 40 *հայ հեղինակութիւններու մէջ*

ՇԱՀԱԾ Է ԱՌԱՋՆՈՒԹԵԱՆ ՄՐՑԱՆԱԿ

Հ. Բ. Ը. Միութեան Նիւ-Եորքի Կեդր. Մարմնոյն ձեռնարկած «Արտաւազդ Գույումճեան» թատերագրական մրցումին

*Մասնակցութիւն՝* Տիկին Հ. Խտըշեան-Լա Շասանյեր, Օր. Իրմա Պէրպէրեան, Պ. Պ. Գէորգ Տէրվիշեան, Նուրեան Մարգարեան, Միհրան Մ. Եփրեմեան, Աշոտ Մարտինեան։

*Բեմադրութիւն՝* ՏԻԿԻՆ ԱՆՆԱ ԲՈՒԴԱՂԵԱՆ

*ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ խօսքը՝ պարզեւատրուած «ՄԵՐ ԿԵԱՆՔԸ» Թատերգութեան մասին։*

*ՄՈՒՏՔԻ ՄԱՏՉԵԼԻ ԳԻՆԵՐ.— Տոմսերը ապահովել սովորական վայրերէն։*

## « ՅԱՌԱՋ »Ի ԲԱՐԳԱՒԱՃՄԱՆ ՀԱՄԱՐ

Պ. Յակոբ Նիկողոսեան քսան Ն. Ֆ. կը նուիրէ :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Շաւիլէն Մ. Սարգիսեան տասը Ն. Ֆ., իր Բ. Թոռնիկին Ազնիւ– Լուսինի, Ա.ին տարեդարձին առթիւ, Թէհլիրեան սրահին : (Ստանալ «Յառաջ»էն) :

## ՎԵՐԱՄՈՒՏԻ ԽՆՋՈՅՔ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սեւունդի Լիոնի Սիամանթօ խումբին կողմէ, Կիրակի, 18 Դեկտեմբեր, կէսօրէ ետք ժամը 15էն 22 Ցոյներու սրահը՝ 5 Րիւ Պօնըֆուա :

Գեղարուեստական ընտիր բաժին, հաճելի մթնոլորտ : ՊԻԻՖԷ :

Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները :

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Հ. Մ. Ը. Մ.ի պարահանդէսը մեծ պատրաստութեամբ, այս Շաբաթ իրիկուն, Սալ տէ Ֆէթի մէջ : Առաջնակարգ նուագախումբ :

### ՇԱՒԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Հանդիսաւոր տօնակատարութիւն Շաւիլի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ օծման Գ. տարելիցին առիթով : Կիրակի, Դեկտեմբեր 18 :

Կը պատարագէ եւ կը քարոզէ Կաթ. Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ : Բազմաձայն երգեցողութիւնները, Մայր եկեղեցւոյ երգիչներուն կողմէ, ղեկավարութեամբ երաժշտապետ Նշան Սերգոյեանի :

Յաւարտ Ս. պատարագի, մասնաւոր հոգեհանգիստ, եկեղեցւոյ վերակառուցման մասնակցող բոլոր նուիրատուներու ննջեցելոց հոգւոց ի յիշատակ :

Կը հրաւիրուի հաւատացեալ ժողովուրդը անխտիր :

## ՏՕՆԱԾԱՌ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի տօնածառի հանդէսը տեղի պիտի ունենայ 18 Դեկտեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15ին վարժարանին մէջ :

Կը հրաւիրուին ծնողքները եւ համակիրները :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանական յաջորդ հաւաքոյթը այս Զորեքշաբթի, ժամը 21ին, Քաֆէ Քատէի վերնայարկը : Կը խօսի՝ ՊԱՐՈՆ ՈՐԲՈՒՆԻ : Նիւթ.— «Ձեր հացը պիտի շահիք, ձեր ճակտին քրտինքով » :

### ԽՆՋՈՅՔ

Սեբաստիոյ Դաւրայի Հայր. Միութեան կազմակերպած տարեկան խնջոյքը, այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, Խրիմեան սրահին մէջ :

Կը նախագահէ Հայրենակից ՄԿՐՏԻՉ ՀԱՅԹԱՅԵԱՆ :

Գեղարուեստական ճոխ բաժին, երգ, արտասանութիւն, հայկական պարեր եւ անակնկալներ :

Իրենց սիրայօժար մասնակցութիւնը կը բերեն Տիկին Շաքէ Գալայճեան, Հըրաչուհի Ժամկոչեան, Միրիճան Շիրվանեան, արեւելեան նուագ (ուտ՝ Միրիճան Շիրվանեան, ջութակ՝ Շմաւոն Պալեան) :

Մուտքը ազատ է :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուէրները ի նպաստ Լիոնի Եկեղեցւոյ շինութեան .—

Տիկին Տիգրանեանէ տասը Ն. Ֆ., Օր. Ալիս Ֆէրմանեանէ հարիւր Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Գարաքիւլահեանէ Պ. Յակոբ Թէրզեանի Աւագ – Սարկաւագի ձեռնադրութեան առթիւ յիսուն Ն. Ֆ., Ոմն յիսուն Ն. Ֆ. :

Լիոնի Ազք. Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացած է Պ. Ճ. Պահատուրեանէ հանգուցեալ Պօղոս Թաղէոսեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի յիսուն Ն. Ֆ. :

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

ՀԻՆ ՏԱՐՈՒԱՆ ՀԵՏ
ՓԱԿԵՑԷՔ
ՁԵՐ ՀԻՆ ՀԱՇԻՒՆԵՐԸ

Նոր Տարի
Նոր Բաժանեգին

Շնորհակալութեամբ .

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ «ՅԱՌԱՋ»Ի

### ՊԱՍՏԱՌՆԵՐՈՒ ՑՈՒՑԱԴՐՈՒԹԻՒՆ

Բարեգործականի Տիկնանց Միութեան վանք տը Շաքիթէի միջոցին Օր. Հազարապետեան կը ցուցադրէ իր պաստառները, Դեկտեմբեր 17, 18, 19ին, Րիւ տը Թրէվիզ, Ազգային Տան սրահին մէջ :

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## Հ. Յ. Դ.

### ԺՈՂՈՎՆԵՐ ԿԵԴՐ. ՖՐԱՆՍԱՅԻ ՄԷՋ

Արեւմտեան Եւրոպայի Հ. Յ. Դ. Կ. Կոմիտէն ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ հետեւեալ շրջաններու ընկերները, որոնց ներկայ կ'ըլլայ Ամերիկայէն նոր ժամանած՝

ԸՆԿ. Յ. ՏԷՐ-ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ

ԵՕԹՆԵՂԲԱՅՐԵԱՆ, այս Երեքշաբթի իրիկուն, ժամը 8·30ին :

ՎԱՐԱՆԴԵԱՆ, այս Զորեքշաբթի իրիկուն ժամը 8·30ին :

ԴԱՇՏ եւ ԱՆԴՐԱՆԻԿ միասնաբար Տէսինի մէջ, այս Հինգշաբթի իրիկուն, ժամը 8·30ին :

ԱՆԻ, այս Ուրբաթ իրիկուն, ժամը 8·30ին :

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ֆ. Կ. ԽԱՉԻ Մարսէյլի մասնաճիւղի «Մանուկներու Օրը » պիտի տօնէ Յունուար ութին, Ահարոնեան Ակումբին մէջ :

### ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## 1961 "ԳՈՅԱՄԱՐՏ" ՕՐԱՑՈՅՑ - ԱԼՊՈՄԸ

Հրատարակութիւն Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Մարսէյլի Շրջանին

Շքեղ նկարներ, գրական եւ պատմական նիւթերով, ճոխ բովանդակութիւն :

Ընտիր թուղթով .— 13 էջ

ԳԵՂԱԶԱՐԴ ԵՒ ԳՈՒՆԱՒՈՐ ԿՈՂՔ

Բացառիկ խնամքով եւ ճաշակով պատրաստուած այս ՕՐԱՑՈՅՑ – ԱԼՊՈՄԸ պիտի կազմէ ամէն հայ տան զարդը :

Գին 5 Ն. Ֆրանք

ԴԻՄԵԼ .— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի անդամներուն :

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԹԱՏՐՈՆ, — ՍՐԱՀ ՓՕԼ Ֆ'ԼԱՐԻՔ

21, Rue Yves Toudic, Paris (10e) Métro : République

14 ԴԵԿՏԵՄԲԵՐ, ՉՈՐԵՔ ՇԱԲԹԻ ԵՐԵԿՈՅ, ԺԱՄԸ 9ԻՆ

Հովանաւորութեամբ՝ ՀԱՅԿ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀ. ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՏԻԿՆԱՆՑ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻՆ

ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ

## ՄԵՐ ԿԵԱՆՔԸ

### ԳՐԻԳՈՐ - ՎԱՀԱՆԻ

Թատերգութիւն 4 արար եւ 5 պատկեր, որ 40 հայ հեղինակութիւններու մէջ ՇԱՀԱԾ Է ԱՌԱՋՆՈՒԹԵԱՆ ՄՐՑԱՆԱԿ

Հ. Բ. Ը. Միութեան Նիւ – Եորքի Կեդր. Մարմնոյն ձեռնարկած «Արտաւազդ Գույումճեան» թատերագրական մրցումին

Մասնակցութիւն՝ Տիկին Հ. Խտըշեան – Լա Շասանյեր, Օր. Իրմա Պէրպէրեան, Պ. Պ. Գէորգ Տէրվիշեան, Նուրհան Մարգարեան, Միհրան Մ. Եփրեմեան, Աշոտ Մարտինեան :

Բեմադրութիւն՝ ՏԻԿԻՆ ԱՆՆԱ ԲՈՒԴԱՂԵԱՆԻ

ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ խօսքը՝ պարգեւատրուած « ՄԵՐ ԿԵԱՆՔԸ » թատերգութեան մասին :

ՄՈՒՏՔԻ ՄԱՏՉԵԼԻ ԳԻՆԵՐ .— Տոմսերը ապահովել սովորական վայրերէն :

## ԲԱՐԵՆՊԱՏԱԿ ՄԵԾ ՎԱՃԱՌՔ

## Grande Vente de Charité

Կազմակերպուած

Հ. Բ. Ը. ՄԻՈՒԹԵԱՆ ՏԻԿՆԱՆՑ ՕԺԱՆԴԱԿ ՄԱՐՄՆԻՆ ԿՈՂՄԷ

ՇԱԲԱԹ, ԿԻՐԱԿԻ
ԵՐԿՈՒՇԱԲԹԻ

Դեկտեմբեր 17, 18, 19

Կիրակի ամբողջ օրը : Շաբաթ եւ Երկուշաբթի՝ ժամը 14էն 20,

ԱԶԳԱՅԻՆ ՏԱՆ ՄԷՋ՝ 32 Rue de Trévise, Métro Cadet

ԱԺԱՆ ԳԻՆԵՐՈՎ

Ամէն տեսակ ապրանքներ, տրամադրուած ֆրանսական եւ հայկ. մեծ տուներու կողմէ :

ՄԱԿԻ ՌՈՒՖ, ՔՈՐԻԿԱՆ ԼԸԶԻՒՐ եւ ուրիշներ :

ԵԿԷ՛Ք ԵՒ ԳՆԵՑԷ՛Ք

Ձեր փոքր գնումներով՝ մեծ բարիք կրնաք ընել :

ՔԱՋԱԼԵՐԵՑԷՔ ԱՅՍ ԲԱՐԵՆՊԱՏԱԿ ՁԵՌՆԱՐԿԸ

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

ՀԻՆ ՏԱՐՈՒԱՆ ՀԵՏ
ՓԱԿԵՑԷՔ
ՁԵՐ ՀԻՆ ՀԱՇԻՒՆԵՐԸ

**Նոր Տարի**
**Նոր Բաժնեգին**

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ «ՅԱՌԱՋ»ի

### ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*ՓԱՐԻԶԻ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու մարմիններու ներկայացուցիչները այս Շաբաթ երեկոյ ժամը 20·30ին, Մշակոյթի Տան Ս. Թէհ-լիրեան սրահին մէջ,* 17 Րիւ Պլէօ, մէթրօ Քատէ :

*(Շար. նախորդ ժողովին) :*

### ՏՕՆԱԾԱՌ

*Դպրոցասէր Տիկնանց վարժարանի տօնածառի հանդէսը տեղի պիտի ունենայ 18 Դեկտեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15ին վարժարանին մէջ:*

*Կը հրաւիրուին ծնողքները եւ համակիրները:*

### ՎԵՐԱՄՈՒՏԻ ԽՆՋՈՅՔ

*Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սեւունդի Լիոնի Սիամանթօ խումբին կողմէ, Կիրակի, 18 Դեկտեմբեր, կէսօրէ ետք ժամը 15էն 22 Յոյներու սրահը՝* 5 Րիւ Պօնըֆուա :

*Գեղարուեստական ընտիր բաժին, հաճելի մթնոլորտ:* ՊՈՒՖԷ :

*Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները :*

### ՀԱՅԱԾԷՍ ՊԱՏԱՐԱԳ
#### ՎԱՏԻԿԱՆԻ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԷՆ

*Այս Կիրակի, ժամը 10·30ին, հայածէս պատարագ եւ քարոզ պիտի ձայնասփռուին Վատիկանի ռատիոկայանէն :*

*Պատարագիչ՝* ՆՇԱՆ Վ. ԳԱՐԱՔԷՀԷԵԱՆ

*Քարոզիչ Ներսէս Ծ. Վրդ.* ՍԵԹԵԱՆ : *(Մեծաւոր Հռոմի Լեւոնեան դպրոցի) :*

Կարճ ալիք՝ 31·10, 25·55 եւ 19·84 :
Միջին ալիք՝ 196 մ.:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Տէր եւ Տիկին Յ. Տէր Գալուստեան Շաւիլի եկեղեցիին կը նուիրեն՝ տասը Ն. Ֆ., փոխան ծաղկեպսակի ողբացեալ Տիկին Երանիկ Մայիկեանի (Մարսէյլ) մահուան առթիւ:*

### ՆՈՒԷՐ

Տիկին Հերմինէ Հ. Թագւորեան, *իր ննջեցեալներու նուիրական յիշատակին համար քսան Ն. Ֆ. կը նուիրէ Ֆ. Կապոյտ Խաչի Անկէնի մասնաճիւղին :*

### ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՎԻԷՆԻ ՄԷՋ

*Հ. Մ. Ը. Մ.ի պարահանդէսը մեծ պատրաստութեամբ, այս Շաբաթ իրիկուն,* Սալ տէ Ֆէթի *մէջ: Առաջնակարգ նուագախումբ :*

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

*Լսարանական յաջորդ հաւաքոյթը այս Չորեքշաբթի, ժամը 21ին, Քաֆէ Քատէի վերնայարկը: Կը խօսի՝ ՊԱՐՈՆ ՈՐԲՈՒՆԻ: Նիւթ.—* «Ձեր հացը պիտի շահիք, ձեր ճակտին քրտինքով »:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Ֆ. Կ. ԽԱՉԻ Մարսէյլի մասնաճիւղը «Մանուկներու Օրը » պիտի տօնէ Յունուար ութին, Աճարոնեան Ակումբին մէջ:*

## Հ. Յ. Դ.

### ԺՈՂՈՎՆԵՐ ԿԵԴՐ. ՖՐԱՆՍԱՅԻ ՄԷՋ

*Արեւմտեան Եւրոպայի Հ. Յ. Դ. Կ. Կոմիտէն ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ հետեւեալ շրջաններու ընկերները, որոնց ներկայ կ'ըլլայ Ամերիկայէն նոր ժամանած՝*

**ԸՆԿ. Յ. ՏԷՐ-ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ**

*ՎԱԼԱՆՍԻ, այս Չորեքշաբթի իրիկուն ժամը 8·30ին :*

*ԴԱՇՏ եւ ԱՆԴՐԱՆԻԿ միասնաբար Տէսինի մէջ, այս Հինգշաբթի իրիկուն, ժամը 8·30ին :*

*ԱՆԻ, այս Ուրբաթ իրիկուն, ժամը 8·30ին :*

×

*ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Պէլվիլի Ռոստոմ խումբի ժողովը այս Ուրբաթ, ժամը 20·30ին, ընկեր Մանուկի բնակարանը,* 40 Րիւ տը լա Մառ :

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉ
#### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐ

*Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնս թելադրուած իր 17րդ պատգ. ժողովէն, ձեռնարկած է իր շարքերը երիտասարդացնելու կարեւոր գործին, առ այդ տեղի պիտի ունենան մօտ ժամանակէն շարք մը դասախօսութիւններ Մշակոյթի Տան մէջ, Տիկին ՀՈՒՐԻ ԻՓԷԿԵԱՆ–ՊՈՒՏԱՔԵԱՆԻ կողմէ հայ երիտասարդուհիներու համար :*

*Փափաքողները այժմէն կրնան արձանագրուիլ :*

*Դիմել՝* 17 Րիւ Պլէօ, *Մշակոյթի Տան, Կապոյտ Խաչի գրասենեակը, Չորեքշաբթի եւ Շաբաթ օրերը ժամը* 16–19:

Ֆ. Կ. ԽԱՉԻ ՇՐՋ. ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

*ԼՈՅՍ ՏԵՍԱՒ*

#### ԿԱՊՈՅՏ ՕԹԵԱԿ

Առաջին, երկրորդ եւ երրորդ աստիճաններու : Ազատ Որմնադիրներու ընդգրկ սկզբնաւորութիւնը եւ ծէսերու արարողութիւնները :

*Պատրաստուած Հ. Մ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆԷ, 18րդ, էտիմպուրկի բարձր օթեակէն վկայուած :*

*Կը ղրկուի քոնդըը ռամպուրսըման՝*
5 Ն. Ֆ.

14, Av. Albert Sarraut, Goussainlille - S. et O.



ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՄԲ
ԿԱԹՈՂԻԿՈՍ - ՊԱՏՐԻԱՐՔ
**ԳՐԻԳՈՐ-ՊԵՏՐՈՍ ԺԵ. ԿԱՐԴԻՆԱԼ ԱՂԱՃԱՆԵԱՆԻ**
ԵՊԻՍԿՈՊՈՍ ՊԻՏԻ ՕԾՈՒԻ

**Հ. ԿԱՐԱՊԵՏ Վ. ԱՄԱՏՈՒՆԻ**
ՄԽԻԹԱՐԵԱՆ

Ընտրեալ Տիտղոսաւոր Եպս. Ամաթուսայ
Առաջնորդ Փոխանորդ Ֆրանսայի Հայոց
Հայածէս Պատարագը եւ Ձեռնադրութիւնը պիտի կատարուի ,

ԿԻՐԱԿԻ 18 ԴԵԿՏ. ԺԱՄԸ 16ԻՆ

ECLISE SAINT-FERDINAND-DES-TERNES
27, Rue d'Armaillé, Paris (17ᵉ). Métro : Argentine et Ternes

*Արարողութեանց աւարտին, Աջհամբոյր եկեղեցւոյ աւանդատան մէջ :*

**Ի ՊԱՏԻՒ ԿԱՐԴԻՆԱԼ ԱՂԱՃԱՆԵԱՆԻ**

ՆՈՅՆ ՕՐԸ, ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԸ 8·30ԻՆ, ՃԱՇԱՍԵՂԱՆ՝
UNION INTERALLIÈE
33, Rue du Faubourg St.-Honoré. Paris (8ᵉ). Métro : Concorde

*Պատուոյ ճաշասեղանին մասնակցիլ փափաքողները, պէտք է Դեկտեմբեր 14էն առաջ արձանագրուին՝*

*դիմելով Ս. Խաչ Եկեղեցւոյ Ընկերակցութեան.—*
10 bis, Rue Thouin PARIS (5ᵉ). Tél. : ODEon 02-12
C. C. P. Paris 8351-30

ՃԱՇԱԳԻՆ՝ 40 Ն. Ֆ.

*Կարելի է արձանագրուիլ նաեւ Յառաջի մօտ,* Téléph. : **PRO. 86-60**

**ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԹԱՏՐՈՆ — ՍՐԱՀ ՓՕԼ ՖԱԼԱՐԻՖ**
21, Rue Yves Toudic, Paris (10ᵉ) Métro : République
14 ԴԵԿՏԵՄԲԵՐ, ՉՈՐԵՔՇԱԲԹԻ ԵՐԵԿՈՅ, ԺԱՄԸ 9ԻՆ

**ՄԵՐ ԿԵԱՆՔԸ**

ԳՐԻԳՈՐ - ՎԱՀԱՆԻ

### ԽՆՋՈՅՔ

*Սեբաստիոյ Դաւրայի Հայր. Միութեան կազմակերպած տարեկան խնջոյքը, այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, Խրիմեան սրահին մէջ :*

*Կը նախագահէ Հայրենակից ՄԿՐՏԻՉ ՀԱՅԹԱՅԵԱՆ :*

*Գեղարուեստական ճոխ բաժին, երգ, արտասանութիւն, հայկական պարեր եւ անակնկալներ :*

*Իրենց սիրայօժար մասնակցութիւնը կը բերեն* Տիկին Շաքէ Գալայճեան, Հըրաչուհի Ժամկոչեան, Միրիճան Շիրվանեան, *արեւելեան նուագ (ուտ՝* Միրիճան Շիրվանեան, *ջութակ՝* Նմաւոն Պալեան) :

*Մուտքը ազատ է :*

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Առնուվիլի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի « Կառվարենց» խումբը կը ներկայացնէ ՎԱՐԴԱՆԱՆՑԸ Փետրուար 26ին, Կիրակի, Ծալ տը լա Շիմի :*

×

ՄԱՅՐԵՐՈՒ ՓԱՌԱՏՕՆ
ՅՈՒՆԻՍ 13ԻՆ

### Կ'ՈՒԶՈՒԻ

*Աչխոյժ Հայ կին մը որ օրուան մէջ խնամէ եւ ընկերութիւն ընէ տարեց կնոջ մը, Քատէի Թաղամասին մէջ բնակող : Ճաշ եւ պատշաճ վարձատրութիւն :*

*Դիմել Յառաջի վարչութեան :*





Imprimerie Spéciale du journal « Haratch »

ՎԻԷՆ.— Ալեքսան Տէր Յակոբեան, զաւակները եւ բոլոր ազգականները մեծ վշտով կը ծանուցանեն իրենց անդրանիկ զաւկին, եղբօր եւ ազգականին՝

**ԳՐԻԳՈՐ ՏԷՐ ՅԱԿՈԲԵԱՆԻ**

անակնկալ եւ դառնակսկիծ մահը, որ տեղի ունեցաւ Ալժերիոյ (Պաթնա) ճակատին վրայ Նոյեմբեր վեցին:

Պաշտօնական հանդիսաւոր յուղարկաւորութիւնը, մասնակցութեամբ տեղական իշխանութեանց, պիտի կատարուի այս Շաբաթ օրը, 17 Դեկտ., ժամը 16ին:

## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ ԺՈՂՈՎ

ՓԱՐԻԶԻ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու մարմիններու ներկայացուցիչները այս Շաբաթ երեկոյ ժամը 20·30ին, Մշակոյթի Տան Ս. Թէհլերեան սրահին մէջ, 17 Րիւ Պլէօ, մէթրօ Քատէ:

(Շար. նախորդ ժողովին):

## ՏՕՆԱԾԱՌ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի տօնածառի հանդէսը տեղի պիտի ունենայ 18 Դեկտեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15ին վարժարանին մէջ:

Կը հրաւիրուին ծնողքները եւ համակիրները:

## ՎԵՐԱՄՈՒՏԻ ԽՆՋՈՅՔ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սեւանդի Լիոնի Սիամանթօ խումբէն կողմէ, Կիրակի, 18 Դեկտեմբեր, կէսօրէ ետք ժամը 15էն 22 Յոյներու սրահը՝ 5 Րիւ Պօնըֆուա:

Գեղարուեստական ընտիր բաժին, հաճելի մթնոլորտ: ՊՈՒՖԷ:

Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները:

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Հ. Մ. Ը. Մ.ի պարահանդէսը մեծ պատրաստութեամբ, այս Շաբաթ իրիկուն, Սալ տէ Ֆէթի մէջ: Առաջնակարգ նուագախումբ:

## ՊԱՏԱՐԱԳ – ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Մարսէյլ, Պուլվար Օտտոյի Ս. Յակոբ եկեղեցւոյ Կրօն. Ընկերութիւնը կը ծանուցանէ թէ այս Կիրակի Թաղիս Ս. Յակոբ եկեղեցւոյ անուան տօնակատարութեան առթիւ տեղի պիտի ունենայ հանդիսաւոր Ս. պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Թաղիս եկեղեցաշէն եւ դպրոցաշէն ազգայիններու հոգւոյն:

Յաւարտ պատարագի տեղի պիտի ունենայ աւանդական մատաղ օրհնութիւնը ու բաշխումը Թաղիս Կապոյտ Խաչուհիներու կողմէ:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

«Մանուկներու Օրը» Կրընոպլի մէջ կը տօնուի, նախաձեռնութեամբ Կապ. Խաչի, Յունուար 15ի Կիրակին, Րիւ Ժէի սրահին մէջ:

## Հ. Յ. Դ.

### ԺՈՂՈՎՆԵՐ ԿԵԴՐ. ՖՐԱՆՍԱՅԻ ՄԷՋ

Արեւմտեան Եւրոպայի Հ. Յ. Դ. Կ. Կոմիտէն սախպողաբար ժողովի կը հրաւիրէ հետեւեալ շրջաններու ընկերները, որոնց ներկայ կ'ըլլայ Ամերիկայէն նոր ժամանած՝

**ԸՆԿ. Յ. ՏԷՐ-ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ**

ԴԱՇՏ եւ ԱՆԴՐԱՆԻԿ միասնաբար Տէսինի մէջ, այս Հինգշաբթի իրիկուն, ժամը 8·30ին:

ԱՆԻ, այս Ուրբաթ իրիկուն, ժամը 8·30ին:

×

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Պէլվիլ Ռոստոմ խումբի ժողովը այս Ուրբաթ, ժամը 20·30ին, ընկեր Մանուկի բնակարանը, 40 Րիւ տը լա Մառ:

## ՀԱՅԱԾԷՍ ՊԱՏԱՐԱԳ

### ՎԱՏԻԿԱՆԻ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԷՆ

Այս Կիրակի, ժամը 10·30ին, հայածէս պատարագ եւ քարոզ պիտի ձայնասփռուին Վատիկանի ռատիօկայանէն:

Պատարագիչ՝ ՆՇԱՆ Վ. ԳԱՐԱՔԷՀԷԵԱՆ

Քարոզիչ Ներսէս Ծ. Վրդ. ՍԵԹԵԱՆ:

(Մեծաւոր Հռոմի Լեւոնեան դպրոցի):

Կարճ ալիք՝ 31·10, 25·55 եւ 19·84:

Միջին ալիք՝ 196 մ.:

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՊԱՐԱՆՑԻԿ ԵՐԵԿՈՅ

Կազմակերպութեամբ Հ. Բ. Ը. Միութեան Լիոնի Հայուհեաց մասնաժողովի:

Այս Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ, Շարպոնիյէռի գեղեցիկ սրահին մէջ:

Ի նպաստ Հ. Բ. Ը. Մ. բարենպատակ ձեռնարկներուն (պիտի գործածուի տեղւոյս մէջ):

Գեղարուեստական ճոխ եւ խնամուած բաժին:

Փարիզէն «ՍՕՍԻ» 20 հոգինոց երկսեռ երգի ու պարի խումբը:

Յայտագրի համաձայն պիտի ըլլան ի մէջ այլոց առաջին անգամ ըլլալով հետաքրքրական նորոյթ խաղարկութիւններ, ղեկավարութեամբ Տիկին Յասմիկ Քութաէրեանի:

Կը մասնակցի տաղանդաւոր դաշնակահար Պ. ՍԵԴՐԱԿ ԵԱՎՐՈՒԵԱՆ:

Ներկայ պիտի ըլլայ Փարիզի կեդրոնէն պատգամաւորութիւն մը:

Ընտիր նուագախումբ, Հայկական ջերմ մթնոլորտ: Ճոխ պիւֆէ ուր պիտի գտնէք հայկական աղանդեր եւ անուշեղէններ, մասնաւոր պատրաստուած:

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր Եկեղեցիի վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս Կիրակի մասնաւոր հոգեհանգիստ պիտի կատարուի Ֆրանսայի մէջ գործող եւ վախճանած հետեւեալ եկեղեցականներուն յիշատակին.— Գէորգ Արք. Իւթիւճեան, Վռամշապուհ Արք. Քիպարեան, Արտաւազդ Արք. Սիւրմէեան, Գրիգորիս Եպիսկ. Պալագեան, Երուանդ Եպիսկ. Փէրտահճեան, Սարգիս Եպիսկ. Աճէմեան, Յովհաննէս Ծ. Վրդ. Ֆերհատեան եւ բոլոր քահանայ հայրեր:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ ԺՈՂՈՎ

ՓԱՐԻԶԻ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ներկայացուցչական ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու մարմիններու ներկայացուցիչները այս Շաբաթ երեկոյ ժամը 20·30ին, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ, 17 Րիւ Պլէօ, մէթրօ Քատէ :

(Շրջ. նախորդ ժողովին) :

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն չափազանց զգացուած ցաւակցութիւնները կը յայտնէ կար. Սօֆեանի եւ ընտանեկան պարագաներուն, իր տարաբախտ եղբօր՝

ՅԱԿՈԲ ՍՕՖԵԱՆԻ

մահուան առթիւ :

## ՎԵՐԱՄՈՒՏԻ ԽՆՋՈՅՔ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սեւունցի Լիոնի Սիամանթօ խումբին կողմէ, Կիրակի, 18 Դեկտեմբեր, կէսօրէ ետք ժամը 15էն 22 Յոյներու սրահը՝ 5 Րիւ Պօնըֆուա :

Գեղարուեստական ընտիր բաժին, հաճելի մթնոլորտ : ՊՈՒՖԷ :

Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները :

## Կ'ՈՒԶՈՒԻ

Աշխոյժ Հայ կին մը որ օրուան մէջ խնամէ եւ ընկերութիւն ընէ տարեց կնոջ մը, Քատէի Թաղամասին մէջ բնակող : Ձաշ եւ պատշաճ վարձատրութիւն :

Դիմել Յառաջի վարչութեան :

## ՏՕՆԱԾԱՌ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի տօնածառի հանդէսը տեղի պիտի ունենայ 18 Դեկտեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15ին վարժարանին մէջ :

Կը հրաւիրուին ծնողքները եւ համակիրները :

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՊԱՐԱՆՑԻԿ ԵՐԵԿՈՅ

Կազմակերպութեամբ Հ. Բ. Ը. Միութեան Լիոնի Հայուհեաց մասնաժողովի :

Այս Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ, Շարպոնիյէռի փեղեցիկ սրահին մէջ :

Ի նպաստ Հ. Բ. Ը. Մ. բարենպատակ ձեռնարկներուն (պիտի գործածուի տեղւոյս մէջ) :

Գեղարուեստական ճոխ եւ խնամուած բաժին :

Փարիզէն «ՍՕՍԻ» 20 հոգինոց երկսեռ երգի ու պարի խումբը :

Յայտագրի համաձայն պիտի ըլլան ի մէջ այլոց առաջին անգամ ըլլալով հետաքրքրական նորոյթ խաղարկութիւններ, ղեկավարութեամբ Տիկին Յասմիկ Քիւքճէրեանի :

Կը մասնակցի տաղանդաւոր դաշնակահար Պ. ՍԵԴՐԱԿ ԵԱՎՐՈՒԵԱՆ :

Ներկայ պիտի ըլլայ Փարիզի կեդրոնէն պատգամաւորութիւն մը :

Ընտիր նուագախումբ, Հայկական ջերմ մթնոլորտ : Ճոխ պիւֆէ ուր պիտի գտնէք հայկական աղնդեր եւ անուշեղէններ, մասնաւոր պատրաստուած :

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Հ. Մ. Ը. Մ.ի պարահանդէսը մեծ պատրաստութեամբ, այս Շաբաթ իրիկուն, Սալ տէ Ֆէթի մէջ: Առաջնակարգ նուագախումբ :

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉ

### ԿՐԸՆՈՊԼԸ

Կրընոպլի Կապոյտ Խաչի նախաձեռնութեամբ եւ ծնողական խորհրդակցական ժողովէ մը վերջ՝ Կրընոպլի հեռաւոր մէկ արուարձանին, Վիզքօզի մէջ բացուած է հայերէնի դասընթացք մը :

Դասաւանդութիւնները տեղի կ'ունենան Կիրակի առաւօտները ժամը 10·30ին, Տիկին Ա. Ասլանեանի բնակարանը :

×

Այս առթիւ վարչութիւնս պարտք կը զգայ, իր ջերմագին շնորհակալութիւնները յայտնել Տէր եւ Տիկին Խաչիկ Ասլանեանի, որ իրենց բնակարանը սիրայօժար տրամադրելով, նպաստեցին այս ազգօգուտ ձեռնարկի յաջողութեան :

## ՇԱՒԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Հանդիսաւոր տօնակատարութիւն Շաւիլի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ օծման Գ. տարելիցին առիթով: Կիրակի, Դեկտեմբեր 18:

Կը պատարագէ եւ կը քարոզէ Կաթ. Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ: Բազմաձայն երգեցողութիւնները, Մայր եկեղեցւոյ երգիչներուն կողմէ, ղեկավարութեամբ երաժշտապետ Նշան Սերգոյեանի :

Յաւարտ Ս. պատարագի, մասնաւոր հոգեհանգիստ, եկեղեցւոյ վերակառուցման մասնակցող բոլոր նուիրատուներու ննջեցելոց հոգւոց ի յիշատակ :

Կը հրաւիրուի հաւատացեալ ժողովուրդը անխտիր :

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

ՀԻՆ ՏԱՐՈՒԱՆ ՀԵՏ
ՓԱԿԵՑԷՔ
ՁԵՐ ՀԻՆ ՀԱՇԻՒՆԵՐԸ

Նոր Տարի
Նոր Բաժանեգին

ՎԱՐՁՈՒԹԻՒՆ «ՅԱՌԱՋ»Ի





## ԽՆՋՈՅՔ

Սեբաստիոյ Դաւրայի Հայր. Միութեան կազմակերպած տարեկան խնջոյքը, այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, Խրիմ...ան սրահին մէջ :

Կը նախագահէ Հայրենակից ՄԿՐՏԻՉ ՀԱՅԹԱՅԵԱՆ :

Գեղարուեստական ճոխ բաժին, երգ, արտասանութիւն, հայկական պարեր եւ անակնկալներ :

Իրենց սիրայօժար մասնակցութիւնը կը բերեն Տիկին Շաքէ Գալայճեան, Հըրաչուհի Ժամկոչեան, Միհրիճան Շիրվանեան, արեւելեան նուագ (ուտ՝ Միհրիճան Շիրվանեան, ջութակ՝ Շմաւոն Պալեան) :

Մուտքը ազատ է :







Imprimerie Spéciale du journal « Haratch »

*ԵՐԵՒԱՆԻ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԻ ԺԱՄԵՐԸ*

Ամէն Չորեքշաբթի եւ Կիրակի առաւօտները Փարիզի ժամով ժամը 9էն մինչեւ 9.30 կարճ ալիք 25 եւ 30 մեթր :



*ԼՈՅՍ ՏԵՍԱՒ*

ԿԱՊՈՅՏ ՕԹԵԱԿ

Առաջին, երկրորդ եւ երրորդ աստիճաններու: Ազատ Որմնադիրներու ընդհանուր սկզբնաւորութիւնը եւ ծէսերու արարողութիւնները :

*Պատրաստուած Հ. Մ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆԷ, 18րդ, Էտիմպուրկի բարձր օթեակէն վկայուած :*

*Կը ղրկուի քոնդրը ռամպուրսման՝*

5 Ն. Ֆ.

14, Av. Albert Sarraut, Coussainville - S. et O.

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Որբերու Օգն. Մարմինը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Գ. Աղլաղանեանէ 15 Ն. Ֆ. Օր. Մարի Ժամկոչեանի մահուան քառասունքին առթիւ :*

*ԾԱԽՈՒ ՏՈՒՆ ՓՈՆ ՏԸ ՇԷՐՒԻԻ ՄԷՋ*

*Օդաւէտ եւ ազատ, չորս յարկաբաժինով շէնք մը ծախու է, մեկնումի պատճառով: 16 սենեակ, 1250 քառ. մեթր հող, ցանկապատով շրջապատուած: Իւրաքանչիւր յարկաբաժին ունի տուշ, արտաքնոց, թուալէթ, նաեւ մեծ կառատուն (չորս ինքնաշարժի) մը հրապարակի վրայ, որ կարելի է ի հարկին բնակութեան սրահի կամ խանութի վերածել : Մանրամասնութեանց եւ այցելութեան համար դիմել Ժ. Պիչաքճեանի,*

Rue de la Poste, Pont de Cheruy (Isère).

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

*Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութեան եւ Փարիզի շրջանի մասնաճիւղերուն կողմէ, Հինգշաբթի, Դեկտ. 29ին, ժամը 15ին: Սալ Քատէի մէջ, 21 Րիւ Քատէ :*

*Գեղարուեստական ճոխ բաժին, հայկական պարեր, ներկայացում, եւ անակընկալներ :*

*Միջնարարին՝ ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱՆ բացառիկ յայտնութիւնով մը նոր տարին պիտի շնորհաւորէ ու մանուկներուն պիտի բաժնէ նախընտրիք եւ միրք :*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

*Մելիտոս Մեսրոպի Աբրահամեան կը փնտռէ իր որդին Աբրահամեան Լիբարեթ Մելիտոսի, ծնած 1921ին Օշական : Տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի գրել Պ. Եղնիկ Ժամկոչեանի, հասցէ .—*

J. Jamgotchian

150, Rue de Chatou, Colombes (Seine)

×

*Հրանդ Փանոսեան կը փնտռէ իր ազգականը Նաղիբեան Աւետիս Պետրոսի, Ակնցի, կնոջ անունը Աղաւնի: Դիմել Հրանդ Փանոսեանի: Հասցէ .— Երեւան, Բարեկամութեան փողոց թիւ 48, Հայաստան :*

Imprimerie Spéciale du journal « Haratch »

Ծիրանի եւ Ջիլի Պապայեանց, Տէր եւ Տիկին Խաչիկ Ալէմշահ եւ զաւակը, Տէր եւ Տիկին Վահէ Պօղոսեան, Պ. Կարապետ Պապայեանց, Տոքթ. եւ Տիկին Գէորգ Պապայեանց եւ զաւակը, Տէր եւ Տիկին Գազանճեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Լուիճի Թրեվիզօնիօ եւ զաւակը, Այրի Տիկին Ժան տը Քոսթեր, Տէր եւ Տիկին Տունեաք, ինչպէս նաեւ Պօղոսեան, Նառլեան, Հէքիմեան, Խանպէկեան, Եղիկեան, Ճինկէօզեան, Կիւրեղեան Ալէմշահ ընտանիքները սրտի խոր ցաւով կը ծանուցանեն իրենց մօր, քրոջ, հարսին, մօրաքրոջ, քրոջ զաւկին, եղբօր զաւկին, զարմիկին եւ ազգականին՝

## ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ԺԻՒԼԻԷԹ ՊԱՊԱՅԵԱՆՑԻ

(Ծնեալ Պօղոսեան)

ղառնաղէտ մահը, որ տեղի ունեցաւ յետ կարճատեւ եւ անողոք հիւանդութեան, Միլանոյի մէջ, Դեկտ. 18ին, 49 տարեկանին:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Չորեքշաբթի, Միլանոյի մէջ:

Via San Calecero 3, Milano.

ՅԱՌԱՋ.— Մեր սրտագին ցաւակցութիւնները ողբացեալին զաւակներուն, քրոջ, եղբօր եւ համայն ընտանիքին:

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութեան եւ Փարիզի շրջանի մասնաճիւղերուն կողմէ, Հինգշաբթի, Դեկտ. 29ին, ժամը 15ին: Սալ Քատէի մէջ, 21 Րիւ Քատէ:

Գեղարուեստական ճոխ բաժին, հայկական պարեր, ներկայացում, եւ անակընկալներ:

Միջնարարին՝ ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱՆ բացառիկ յայտնութիւնով մը Նոր տարին պիտի շնորհաւորէ ու մանուկներուն պիտի բաժնէ նախընծիրներ եւ մրգեր:

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉ
## ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐ

Ֆ. Կապ. Խաչի Շրջ. վարչութիւնս թելադրուած իր 17րդ Պատգ. Ժողովէն ձեռնարկած է իր շարքերը երիտասարդացնելու կարեւոր գործին. առ այդ, տեղի պիտի ունենան մօտ ժամանակէն շարք մը դասախօսութիւններ, Հայոց պատմութեան, հայ գրականութեան եւ հայ կինը հետաքրքրող նիւթերու շուրջ, Տիկին Հուրի Իփէկեան — Պուտաքեանի կողմէ: Կը հրաւիրենք հայ երիտասարդուհիները օգտուիլ այս շինիչ դասախօսութիւններէն: Արձանագրուելու համար դիմել, 17 Րիւ Պլէօ, Մշակոյթի Տան, Կապոյտ Խաչի գրասենեակը, Չորեքշաբթի եւ Շաբաթ օրերը, ժամը 16–19:

Ֆ. Կ. ԽԱՉԻ ՇՐՋ. ՎԱՐՉՈՒԹԻՒՆ



# Votre Réveillon à Alfortville

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ տեղւոյս կրթական Մարմնին, հովանաւորութեամբ Ս. Պօղոս – Պետրոս Եկեղեցւոյ հոգաբարձութեան:

Ի ՆՊԱՍՏ ՏԵՂԻՈՅՆ ԴՊՐՈՑԻՆ

Դեկտեմբեր 24, Շաբաթ ժամը 21էն մինչեւ առաւօտ,

**Salle Voltaire**

Պատուոյ նախագահ քաղաքապետ՝ RAOUL BLEUZE

ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

**Pépé Nunez et sa grande formation**

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ, ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՃԵԼԻ ՄԹՆՈԼՈՐՏ

ՃՈԽ ՊԻՒՖԷ



**ԵՐԷՑԿԻՆ ՄԱՐԻԱՄ ԱՍՏՈՒՐԵԱՆԻ**

մահը:

Յուղարկաւորութիւնը այս Չորեքշաբթի առաւօտ ժամը 9ին, Իսիի գերեզմանատունը կամ հաւաքուիլ բնակարանը ժամը 8.30ին (Րիւ տը լա Տէֆանս):

Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել:



ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## 1961 "ԳՈՅԱՄԱՐՏ" ՕՐԱՑՈՅՑ - ԱԼՊՈՄԸ

Հրատարակութիւն Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Մարսէյլի Շրջանին

Շքեղ նկարներ, գրական եւ պատմական նիւթերով, ճոխ բովանդակութիւն:

Ընտիր թուղթով — 13 էջ

ԳԵՂԱԶԱՐԴ ԵՒ ԳՈՒՆԱՒՈՐ ԿՈՂՔ

Բացառիկ խնամքով եւ ճաշակով պատրաստուած այս ՕՐԱՑՈՅՑ – ԱԼՊՈՄԸ պիտի կազմէ ամէն հայ տան զարդը:

Գին 5 Ն. Ֆրանք

ԴԻՄԵԼ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի անդամներուն:





## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Մելիտոս Մեսրոպի Աբրահամեան կը փնտռէ իր որդին Աբրահամեան Լիբարեթ Մելիտոսի, ծնած 1921ին Օշականի: Տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի գրել Պ. Եղնիկ Ժամկոչեանի, հասցէ.—

J. Jamgotchian

150, Rue de Chatou, Colombes (Seine)

×

Հրանդ Փանոսեան կը փնտռէ իր ազգականը Նազիրեան Աւետիս Պետրոսի, Ակնցի, կնոջ անունը Աղաւնի: Դիմել Հրանդ Փանոսեանի: Հասցէ.— Երեւան, Բարեկամութեան փողոց թիւ 48, Հայաստան:



Imprimerie Spéciale du journal « Haratch »

Այրի Տիկին Նուարդ Էյվազեան, Աննա, Մասիս Էյվազեան եւ զաւակները, Այրի Տիկին Կէօվչէնեան, Տէր եւ Տիկին Օհանեան (Հայաստան), Տէր եւ Տիկին Կէօվչէնեան, Քիրէճեան (Արժանթին), Էլիճեան (Սուրիա) ընտանիքները սրտի խոր կսկիծով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, փեսայի եղբօր, քեռայրին, մօրաքրոջ որդւոյն, մօրեղբօր, ազգականին եւ բարեկամին՝

ԱՐՍԷՆ ԷՅՎԱԶԵԱՆԻ

ցաւագին եւ յանկարծական մահը որ տեղի ունեցաւ Դեկտեմբեր 15ին, 52 տարեկանին:

Յուղարկաւորութիւնը տեղի կ՚ունենայ Ջորեքշաբթի, 21 Դեկտ.ին, ժամը 16ին, Սէն Ժօզէֆ տէ Քաթըր Բուք եկեղեցին, 182 Րիւ տիւ Մէնիլ, Անիէռ:

Մահազդ չստացողներէն կը խնդրուի, ներկայս իբրեւ այդ նկատել:

Հաղորդակցութիւն.— Փորթ տը Քլիշիէն 140, Փորթ Շամփէրէէն 165 թիւ օթօպիւսները առնել եւ իջնել Րիւ Կրամ:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ԱԼՖՈՐՎԻԼ.— Փարիզի Հայ Մշակոյթի Տան «Սողոմոն Թէհլիրեան» սրահին օժանդակ մարմնի բոլոր անդամները մեծ յուզումով ցաւակցութիւններ կը յայտնեն իրենց ընկերոջ՝ Կարապետ Սօֆեանի եւ ընտանեկան պարագաներուն, իրենց տարաբախտ եղբօր եւ ազգականին Յակոբ Սօֆեանի արկածալի մահուան առթիւ:

## ՆՈՒԷՐ

Մարգար Գույումճեանի մահուան առթիւ Աւետիս Գուցուղեան, Եփրեմ Ութուզեան եւ Ծերիկեանց ընտանիքները տասնական Ն. Ֆ. կը նուիրեն «Յառաջ»ի բարգաւաճման:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Նեկտար Սօֆեան, Տէր եւ Տիկին Տը Վանժէ, Տէր եւ Տիկին Կարապետ Սօֆեան եւ ազգականները իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ, գրաւոր կամ ծաղկեպսակով իրենց ցաւակցութիւնը յայտնեցին ողբացեալ ՅԱԿՈԲ ՍՕՖԵԱՆԻ կսկծալի եւ արկածալի մահուան առթիւ:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Սէն Ժերմէի Թաղ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացած է փոխան ծաղկեպսակի հետեւեալ նուէրները Այրի Տիկին Սուլթան Հիւրմիւզեանի մահուան առթիւ:

Պ. Պ. Հէրիքնազեան եղբարք, Տէր Կարապետեան եղբարք, Ծերոն Միլմիճեան, Միքայէլ Եղիայեան տասնական Ն. Ֆ. ի նպաստ Թաղիս եկեղեցւոյ:

Պ. Պ. Հէրիքնազեան եղբարք, Տէր Կարապետեան եղբարք, Միքայէլ Եղիայեան տասնական Ն. Ֆ. տեղւոյս դպրոցին:

Ինչպէս նաեւ Այրի Տիկին Վարդուհի Գարակէօզեանի մահուան առթիւ շնորհակալութեամբ ստացած են հետեւեալ նուէրները, Թաղիս եկեղեցւոյ եւ դպրոցին:

Պ. Պ. Յակոբ Գարակէօզեան իր մօր մահուան առթիւ յիսուն Ն. Ֆ., Ենովքեան եղբարք, Պառ Թինէլ եւ Ֆոէր, Կարպիս Խաչածեան տասնական Ն. Ֆ., իսկ [illegible]րապետեան եղբարք, Գէորգ Այվազեան հինգական Ն. Ֆ. եկեղեցւոյ:

Պ. Պ. Բիւզանդ Փափազեան, Յարութիւն Մամալեան տասնական Ն. Ֆ., Թորիկ Ն[illegible]ողոսեան եւ Կարպիս Աճէմեան հինգակ[illegible] Ն. Ֆ. Թաղիս դպրոցին:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Դպրոցասէրի տարեկան գեղարուեստական ցերեկոյթը՝ Մարտ 26ին:

×

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը կազմակերպած է Յունուար 8ին, Շարպոնիէի չքեղ սրահներուն մէջ, Լիոնի եկեղեցւոյ ի նպաստ պարահանդէս մը:

ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

ՀԻՆ ՏԱՐՈՒԱՆ ՀԵՏ
ՓԱԿԵՑԷՔ
ՁԵՐ ՀԻՆ ՀԱՇԻՒՆԵՐԸ

## Նոր Տարի Նոր Բաժնեգին

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ «ՅԱՌԱՋ»Ի

ԾՆՈՒՆԴԻ ԵՒ ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Ս. Ծնունդի եւ Նոր Տարուան առթիւ մեր ջերմագին շնորհաւորութիւնները կը յայտնենք բոլոր ազգականներուն, բարեկամներուն, ընկեր–ընկերուհիներուն, մաղթելով բոլորին բարի Ծնունդ եւ երջանիկ տարիներ:

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՀԱՄԲԱՐՁՈՒՄ, ՇՆՈՐՀԻԿ ՋԱԼԼԱԴԵԱՆ եւ ԶԱՒԱԿՆԵՐԸ

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉ

ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐ

Ֆ. Կապ. Խաչի Շրջ. վարչութիւնս թելադրուած իր 17րդ Պատգ. ժողովին ձեռնարկած է իր շարքերը երիտասարդացնելու կարեւոր գործին. առ այդ, տեղի պիտի ունենան մօտ ժամանակէն շարք մը դասախօսութիւններ, Հայոց պատմութեան, հայ գրականութեան եւ հայ կինը հետաքրքրող նիւթերու շուրջ, Տիկին Հուրի Իփէկեան–Պուտաքեանի կողմէ: Կը հրաւիրենք հայ երիտասարդուհիները օգտուիլ այս չնիւր դասախօսութիւններէն: Արձանագրուելու համար դիմել, 17 Րիւ Պլէօ, Մշակոյթի Տան, Կապոյտ Խաչի գրասենեակը, Ջորեքշաբթի եւ Շաբաթ օրերը, ժամը 16–19:

Ֆ. Կ. ԽԱՉԻ ՇՐՋ. ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ԲԱՐԵՆՊԱՏԱԿ ՎԱՃԱՌՔ

Հ. Բ. Ը. Մ. Տիկնանց Օժանդակ Մարմնի բարենպատակ վաճառքը կը շարունակուի Ազգ. Տան մէջ (32 Րիւ տը Թրէվիզ), մինչեւ այս Ջորեքշաբթի իրիկուն:

Նոյն իրիկունը տեղւոյն վրայ պիտի քաշուի վիճակահանութիւնը:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Հայաստանէն Երանուհի Թարխանեան կը փնտռէ իր եղբայրը Սրտաւազդ Գէորգ Թարխանեանը որ հայրենական պատերազմին կորսուած է: Ծնած 1902 թուականին Էջմիածին, հօր անունը Գէորգ, իսկ մօր Հայկանդուխտ, մասնագիտութեամբ բժիշկ է:

× Երեւանէն Պ. Միսաք Եաղուպեան կը փնտռէ իր եղբօրորդիները Պետրոս–Պետիկ, ծնած 1919ին, Օննիկ ծնած 1921ին, իրենց հօր անունն էր Հաճի Յարութիւն Եաղուպեան, ծնած Պանտրմա–էտինճիկ որ իր ընտանիքով գաղթած է Պոլիս 1919 թուականին:

Վերոյիշեալ անձերու մասին տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի տեղեակ պահել Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ դիւանատունը, 15, Րիւ Ժան Կուժօն, Փարիզ (8):





ՊԱՏԱՐԱԳ ԾՆՈՒՆԴԻ ԱՌԹԻՒ

Կրընոպլի Հայ Ազգ. Եկեղեց. Միութեան վարչութիւնը, ի գիտութիւն քաղաքիս եւ շրջաններու Հայութեան կը ծանուցանէ թէ Ծննդեան տօնին առթիւ պատարագ կը մատուցուի այս Կիրակի Րիւ Ժէի Սէն Լուի սրահին: մէջ Ժամերգութիւնը կը սկսի առաւօտեան ժամը 9ին:

×

Փոն տը Շէրիւի եւ շրջակայքի Հայ Ազգ. Միութիւնը եւ Եկեղեց. հոգաբարձութիւնը կը ծանուցանեն թէ այս Կիր. առաւօտ Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մատրան մէջ պատարագ պիտի մատուցանէ Տէսինէն Տէր Վարագ քհնյ. Աւագեանը, դպրապետութեամբ Պ. Գրիգոր Մարտիրոսեանի:

ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութեան եւ Փարիզի շրջանի մասնաճիւղերուն կողմէ, Հինգշաբթի, Դեկտ. 29ին, ժամը 15ին: Սալ Քատէի մէջ, 21 Րիւ Քատէ:

Գեղարուեստական ճոխ բաժին, հայկական պարեր, ներկայացում, եւ անակնկալներ:

Միջնարարին՝ ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱՆ բացառիկ յայտնութիւնով մը Նոր տարին պիտի շնորհաւորէ ու մանուկներուն պիտի բաժնէ նախընթրիք եւ միրգ:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

մէն բան կը պարտադրէ Ալժերիոյ որ վաղը՝ Ֆրանսայի ընկերը մնայ : Ֆրանսան եղբայրօրէն պատրաստ է ատոր » :

Եւ այս ամբողջը պատրաստելու համար է որ եթէ հանրաքուէին արդիւնքը դրական ըլլայ, Հանրային Ալժերական Իշխանութիւններ (գործադիր եւ ժողով) պիտի կազմակերպուին ինքնորոշման սպասելով :

Եզրակացնելով, տը Կոլ անգամ մը եւս յիշեց թէ Ֆրանսան միշտ խաղաղութիւն կ'առաջարկէ եւ պատրաստ է ընդունելու պատուիրակները անոնց որոնք կը կռուին եւ վերջացուց .— «Ֆրանսուհիներ, Ֆրանսացիներ, անկեղծ եւ հոծ, «այո»ն, զոր, տը Կոլ, Հանրապետութեան Նախագահը կ'ուզէ ձեզմէ, պիտի ըլլայ Ֆրանսայի որոշումը : Ալժերիոյ պիտի տայ ազատ ապագայի մը կարելիութիւնը : Պիտի փաստէ աշխարհի որ Ֆրանսացի ժողովուրդը, այսօր աւելի քան երբեք, միացած, յստակատես եւ ազնիւ է : Ինծի, որուն պարտականութիւնը ծանր է, ի՛նչ նեցուկ պիտի բերէ : Կեցցէ՛ Հանրապետութիւնը, կեցցէ՛ Ֆրանսան» :

Այս առաջին ճառէն ետք, ամէն ոք կ'ուզէ մանաւորաբար գիտնալ թէ ի՞նչ նորութիւն ըսաւ Նախագահը : Ալժերիոյ Եւրոպացիներու մօտ՝ յուզում եւ դառնութիւն, մահմետականներու մօտ՝ վրդովմունք կայ, իսկ քաղաքական հոսանքները կը մնան իրենց դիրքին վրայ :

ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԿԵԴՐՈՆ (արմատականներու մորիսեան թեւ) .— Նախագահին ճառին մէջ, գտանք այն հիմնական հակասութիւնը զոր միշտ կը գտնենք :

ԺՈՐԺ ՊԻՏՕ .— Ո՛չ, վերջնականապէս, ո՛չ : Ոչ մէկ նորութիւն : Ոչ մէկ չահեկան բան : Ինչ կը վերաբերի իր ժամանակին հետ ամուսնանալու կը թուի թէ Զօր. տը Կոլ մոռցած է Յունիս 18ը երբ ոչ ոք կ'ուզէր հետը ամուսնանալ :

ՏԷՓՐԷՕ (ինքնավար ընկերվարական) երազատես քաղաքականութիւն մը : Փոլ Րենօ եւ Մօրիս Շուման կողմնակից են նախագահին քաղաքականութեան :

Պ. Արմենակ Աժտէրեան, Պ. Վահրամ Աժտէրեան, Տէր եւ Տիկին Լեւոն Աժտէրեան, սրտի խոր ցաւով կը ծանուցանեն իրենց կնոջ, մօր եւ ազգականին՝

ՆՈՒԱՐԴ ԱԺՏԷՐԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ Դեկտեմբեր 17ին, յետ երկարատեւ հիւանդութեան, 66 տարեկան հասակին :

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի այս Ուրբաթ, (23 Դեկտ.) առաւօտուն ժամը 10·30ին, Փարիզի Հայոց Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիին մէջ (15 Րիւ Ժան Կուժօն), եւ մարմինը պիտի ամփոփուի Պանեէօյի գերեզմանատունը :

Մասնաւոր մահազդ դրկուած չըլլալով, կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել :

Ա. Աժտէրեան .— 41 Ավընիւ տէ Կոպըլէն, Փարիզ (13) :

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Պոմոնի Կապոյտ Խաչի մասնաճիւղը, «Մանուկներու Օրը» կը տօնէ 29 Դեկտեմբեր, Հինգշաբթի օր :

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Նոր Տարւոյ եւ Ծնունդի առթիւ Չորեքշաբթի օրուան հաւաքոյթները ընդհատուած են :

Վերաբացում՝ 1961, Յունուար 11, Չորեքշաբթին :

### ՊԱՏԱՐԱԳ ԾՆՈՒՆԴԻ ԱՌԹԻՒ

Կրընոպլի Հայ Ազգ. Եկեղեց. Միութեան վարչութիւնը, ի գիտութիւն քաղաքիս եւ շրջաններու Հայութեան կը ծանուցանէ թէ Ծննդեան տօնին առթիւ պատարագ կը մատուցուի այս Կիրակի Րիւ Ժէի Սէն Լուի սրահին : մէջ Ժամերգութիւնը կը սկսի առաւօտեան ժամը 9ին :

×

Փոն տը Շէրիւի եւ շրջակայքի Հայ Ազգ. Միութիւնը եւ Եկեղեց. հոգաբարձութիւնը կը ծանուցանեն թէ այս Կիր. առաւօտ Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մատրան մէջ պատարագ պիտի մատուցանէ Տէսինէն Տէր Վարագ քհնյ. Աւագեանը, դպրապետութեամբ Պ. Գրիգոր Մարտիրոսեանի :

Imprimerie Spéciale du journal « Haratch »

### ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

ՀԻՆ ՏԱՐՈՒԱՆ ՀԵՏ
ՓԱԿԵՑԷՔ
ՁԵՐ ՀԻՆ ՀԱՇԻՒՆԵՐԸ

## Նոր Տարի Նոր Բաժանորդին

ՎԱՐՁՈՒԹԻՒՆ «ՅԱՌԱՋ»Ի

### ՍՈՒՐԲ ՍՏԵՓԱՆՈՍ

Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյն մէջ, այս Կիրակի ժամը 10ին, պիտի մատուցուի Սուրբ Ստեփանոսի տօնին առթիւ քառաձայն Ս. պատարագ : Յետ պատարագի խորհրդարանին մէջ ընդունելութիւն պիտի ըլլայ, Հոգաբարձութեան կողմէ ի պատիւ Դպրաց Դասու, Սրբազան Հօր նախագահութեան տակ :

Նոյն օրը Բիւթանիոյ հայրենակիցներու խնդրանքով հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Նիկոմիդիոյ բաղմավաստակ Առաջնորդ Ստեփանոս Արք. Յովակիմեանի յիշատակին : Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը :

### ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

ՇԱԲԱԹ, 24 Դեկտ. Ճրագալոյց Ս. Ծննդեան : Կէսօրէ վերջ ժամը 17ին ժամերգութիւն եւ ձայնաւոր պատարագ :

ԿԻՐԱԿԻ 25 Դեկտ. Ս. Ծնունդ ժամերգութիւն եւ Եպիսկոպոսական ձայնաւոր պատարագ ժամը տասնին :

ԵՐԿՈՒՇԱԲԹԻ 26 Դեկտ. Ս. Ստեփանոս նախավկայ : Հոգեհանգստեան ձայնաւոր պատարագ, համօրէն ննջեցելոց, ժամը 10ին :

ԿՐԵՄԼԻՆԻ մէջ կը շարունակուի Գերագոյն Խորհուրդի նիստը: Առջի օրուան նիստին խօսք առած են քան պատգամաւորներ: Մոսկուայի քաղաքապետը յայտարարած է, թէ մայրաքաղաքի բընակչութեան թիւը հասած է եօթը միլիոնի: Շատեր դժգոհած են հանրային հաստատութիւններու եւ բնակելի շէնքերու անբաւարարութենէն:

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

ՀԻՆ ՏԱՐՈՒԱՆ ՀԵՏ
ՓԱԿԵՑԷՔ
ՁԵՐ ՀԻՆ ՀԱՇԻՒՆԵՐԸ

# Նոր Տարի
# Նոր Բաժնեգին

ՎԱՐՁՈՒԹԻՒՆ «ՅԱՌԱՋ»Ի

### ԲԱԳՐԱԴԻՏԻ

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այս Ուրբաթ ժամը 15ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Սէնթ Ժըլըվիէվ տէ Պուայի գերեզմանատունը:

Ներկայս ընդունիլ իբրեւ մահազդ:

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Սէն Լու Կրան Փէն Թաղի բարերարներէն՝ Նշան Նէրզամեան որ քանի մը տարի առաջ Ամերիկա փոխադրուած էր, իր մահկանացուն կնքած է Փրովիտէնսի մէջ: Այդ առթիւ փոխան ծաղկեպսակի նուէրներէն, հանգուցեալին ընտանիքը հարիւր տոլար նուիրած է Սէն Լուի Ս. Գէորգ եկեղեցիին եւ յիսուն Ն. Ֆ. Յառաջին:

Այս առթիւ Սէն Լուի Թաղականութիւնը շնորհակալութիւն կը յայտնէ ողբացեալին այրիին եւ զաւակներուն եւ պարտք կը համարէ մասնաւոր հոգեհանգիստ կատարել տալ այս Կիրակի առաւօտ Ս. Գէորգ եկեղեցւոյ մէջ:

### ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

ՇԱԲԱԹ, 24 Դեկտ. Ճրագալոյց Ս. Ծննդեան: Կէսօրէ վերջ ժամը 17ին ժամերգութիւն եւ ձայնաւոր պատարագ:

ԿԻՐԱԿԻ 25 Դեկտ. Ս. Ծնունդ ժամերգութիւն եւ Եպիսկոպոսական ձայնաւոր պատարագ ժամը տասնին:

ԵՐԿՈՒՇԱԲԹԻ 26 Դեկտ. Ս. Ստեփաննոս Նախավկայ: Հոգեհանգստեան ձայնաւոր պատարագ, համօրէն ննջեցելոց, ժամը 10ին:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Անիէռ – Պուա Քոլոմպի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս երկուշաբթի կէսօրէ ետք ժամը 16ին, ընկերուհի Աւետիսեանի բնակարանը (14 Րիւ Րուժէ տը լ'Իլ):

### ՍԱՐՍԷԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր եկեղեցիի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է փոխան ծաղկեպսակի հետեւեալ նուէրները, ողբացեալ Մարգար Գույումճեանի յուղարկաւորութեան առիթով.— Պ. Վահրամ Եազըճեան յիսուն Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Եղիա Մելքոնեան քսան Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Վարդան Քիւփէլեան քսան, Տէր եւ Տիկին Կարապետ Պէրպէրեան քսան, Պ. Պ. Եփրեմ Օռթուզեան Յովհ. Կուտուզեան, Միհրան Հացագործեան 10ական Ն. Ֆ.:

× Երեւանէն Շահրազ Շահրազեան կը փնտռէ Յովհ. եւ Արմենուհի Պանտիկեան: Դիմել եկեղեցի:

### ՍՈՒՐԲ ՍՏԵՓԱՆՈՍ

Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյն մէջ, այս Կիրակի ժամը 10ին, պիտի մատուցուի Սուրբ Ստեփանոսի տօնին առթիւ քառաձայն Ս. պատարագ: Յետ պատարագի խորհրդարանին մէջ ընդունելութիւն պիտի ըլլայ, Հոգաբարձութեան կողմէ ի պատիւ Դպրաց Դասու, Սրբազան Հօր նախագահութեան տակ:

Պիտի կարդացուի նաեւ Վեհ. Հայրապետի կոնդակը Կ. Պոլսոյ Ամենապատիւ Սրբազան Պատրիարք Տէր Գարեգին Արք. Խաչատուրեանի ծննդեան 80ամեակին առիթով:

× Նոյն օրը Բիւթանիոյ հայրենակիցներու խնդրանքով հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Նիկոմիդիոյ բաղմավաստակ Առաջնորդ Ստեփանոս Արք. Յովակիմեանի յիշատակին: Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը:

### ՊԱՏԱՐԱԳ ԾՆՈՒՆԴԻ ԱՌԹԻՒ

Կրընոպլի Հայ Ազգ. Եկեղեց. Միութեան վարչութիւնը, ի գիտութիւն քաղաքիս եւ շրջաններու Հայութեան կը ծանուցանէ թէ Ծննդեան տօնին առթիւ պատարագ կը մատուցուի այս Կիրակի Րիւ Ժէլի Սէն Լուի սրահին: մէջ ժամերգութիւնը կը սկսի առաւօտեան ժամը 9ին:

×

Փոն տը Շէրիւի եւ շրջակայքի Հայ Ազգ. Միութիւնը եւ Եկեղեց. հոգաբարձութիւնը կը ծանուցանեն թէ այս Կիր. առաւօտ Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մատրան մէջ պատարագ պիտի մատուցանէ Տէսինէն Տէր Վարագ քհնյ. Աւագեանը, դպրապետութեամբ Պ. Գրիգոր Մարտիրոսեանի:

# ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութեան եւ Փարիզի շրջանի մասնաճիւղերուն կողմէ, Հինգշաբթի, Դեկտ. 29ին, ժամը 15ին:

**Salle Cadet, 21 Rue Cadet**

Գեղարուեստական ճոխ բաժին, հայկական պարեր, ներկայացում, եւ անակընկալներ:

Միջնարարին՝ ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱՆ բացառիկ յայտնութիւնով մը Նոր տարին պիտի շնորհաւորէ ու մանուկներուն պիտի բաժնէ նախընթրիք եւ միրգ:









### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Պոմոնի Կապոյտ Խաչի մասնաճիւղը, «Մանուկներու Օրը» կը տօնէ 29 Դեկտեմբեր, Հինգշաբթի օր:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն Յանձնախումբը խորին շնորհակալութեամբ եւ երախտիքով ստացաւ ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շի - նութեան, Պ. Կարպիս Մանուկեանէ հա - զար Ն. Ֆ.: Պ. Կարպիս Մանուկեան բազմաթիւ անգամներ մեծաքանակ եւ առա - տաձեռն նուէրներով շինութեան գործին օգտակար եղած է :

Նոյնպէս Պ. Ռուպէր Պզտիկեան նուի - րած է հազար Ն. Ֆ. Լիոնի եկեղեցւոյ շինութեան :

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Պոմոնի Կապոյտ Խաչի մասնաճիւղը, «Մանուկներու Օրը» կը տօնէ 29 Դեկ - տեմբեր, Հինգշաբթի օր :

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

ՇԱԲԱԹ, 24 Դեկտ. Ճրագալոյց Ս. Ծը-նընդեան : Կէսօրէ վերջ ժամը 17ին ժա - մերգութիւն եւ ձայնաւոր պատարագ :

ԿԻՐԱԿԻ 25 Դեկտ. Ս. Ծնունդ ժամեր-գութիւն եւ Եպիսկոպոսական ձայնաւոր պատարագ ժամը տասնին :

ԵՐԿՈՒՇԱԲԹԻ 26 Դեկտ. Ս. Ստեփա - նոս նախավկայ : Հոգեհանգստեան ձայ - նաւոր պատարագ, համօրէն ննջեցելոց, ժամը 10ին :

## ՊԱՏԱՐԱԳ ԾՆՈՒՆԴԻ ԱՌԹԻւ

Կրընոպլի Հայ Ազգ. Եկեղեց. Միու - թեան վարչութիւնը, ի գիտութիւն քա - ղաքիս եւ շրջաններու Հայութեան կը ծա - նուցանէ թէ Ծննդեան տօնին առթիւ պա - տարագ կը մատուցուի այս Կիրակի Րիւ ԺԷի ՍԷՆ Լուի սրահին : մէջ ժամերգու-թիւնը կը սկսի առաւօտեան ժամը 9ին :

×

Փոն տը Շէրիւի եւ շրջակայքի Հայ Ազգ. Միութիւնը եւ Եկեղեց. հոգաբար-ձութիւնը կը ծանուցանեն թէ այս Կիր. առաւօտ Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մատրան մէջ պատարագ պիտի մատուցանէ Տէսի-նէն Տէր Վարագ քհնյ. Աւագեանը, դը - րապետութեամբ Պ. Գրիգոր Մարտիրոս - եանի :

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Անիէռ - Պուա Քոլոմպի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս երկու - շաբթի կէսօրէ ետք ժամը 16ին, ընկերու-հի Աւետիսեանի բնակարանը (14 Րիւ Լուժէ տը լ'Իլ) :

## ՍՈՒՐԲ ՍՏԵՓԱՆՈՍ

Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկե - ղեցւոյն մէջ, այս Կիրակի ժամը 10ին, պիտի մատուցուի Սուրբ Ստեփանոսի տօնին առթիւ քառաձայն Ս. պատարագ : Յետ պատարագի խորհրդարանին մէջ ըն-դունելութիւն պիտի ըլլայ, Հոգաբար - ձութեան կողմէ ի պատիւ Դպրաց Դասու, Սրբազան Հօր նախագահութեան տակ :

Պիտի կարդացուի նաեւ Վեհ. Հայրա - պետի կոնդակը Կ. Պոլսոյ Ամենապատիւ Սրբազան Պատրիարք Տէր Գարեգին Արք. Խաչատուրեանի ծննդեան 80ամեակին ա-ռիթով :

× Նոյն օրը Բրիւթանիոյ հայրենակիցնե-րու խնդրանքով հոգեհանգստեան պաշ - տօն պիտի կատարուի Նիկոմիդիոյ բազ - մավաստակ Առաջնորդ Ստեփանոս Արք. Յովակիմեանի յիշատակին : Կը հրաւիր - ուի հայ հասարակութիւնը :



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութեան եւ Փարիզի շրջանի մասնա - ճիւղերուն կողմէ, Հինգշաբթի, Դեկտ. 29ին, ժամը 15ին :

**Salle Cadet, 21 Rue Cadet**

Գեղարուեստական ճոխ բաժին, հայ - կական պարեր, ներկայացում, եւ անա - կընկալներ :

Մէջնարարին՝ ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱՆ բացա-ռիկ յայտնութիւնով մը նոր տարին պիտի շնորհաւորէ ու մանուկներուն պիտի բաժ-նէ նախընթրիք եւ միրք :

Փոխադրութեան համար հանրակառքերը կը մեկնին .—

ԱԼՖՈՐՎԻԼ ժամը 13.30ին Փլաս Քառնօ :

ԱՌՆՈՒՎԻԼ ժամը 13.30ին, Պ. Նիկողոսեանի նպարավաճառատան առջեւէն (պի-տի անցնի դաշտերէն) :

ԻՍԻ .— ժամը 13.30ին Խրիմեան դպրոցէն :

ՇԱՒԻԼ .— ժամը 13.30ին դպրոցին առջեւէն :

## 1961 ՅՈՒՆՈՒԱՐ 1ԷՆ ՍԿՍԵԱԼ

Յառաջի բաժանորդագրական նոր պայմաններն են.—

ՖՐԱՆՍԱ

| | | |
|---|---|---|
| Տարեկան բաժնեգին՝ | Ն. Ֆ. | 50 |
| Վեցամսեայ | Ն. Ֆ. | 27 |
| Եռամսայ | Ն. Ֆ. | 15 |
| Հատը՝ | Ն. Ֆ. | 0,25 |

ԱՐՏԱՍԱՀՄԱՆ

| | | | |
|---|---|---|---|
| Տարեկան | 12 տոլար | Ն. Ֆ. | 35 |
| Վեցամսեայ | | Ն. Ֆ. | 35 |

×

Պատերազմէն առաջ Յառաջ իր օտար մամուլի հանգամանքով որ կը նշանակէ սահմանափակ տպաքանակ եւ առեւտրական յայտարարութեանց չքայութիւն, կ'արժէր յիսուն սանթիմ, երբ տեղական թերթերը կ'արժէին 25 սանթիմ: 1945էն ի վեր ճիշդ հակառակ պայմաններու մէջ, Յառաջի վարչութիւնը փորձած է աւելի քան 15 տարի դէմ դնել, օրէ օր ծանրացող պայմաններու:

Վստահ ենք որ մեր հաւատարիմ ընթերցողները պիտի շարունակեն իրենց համակրութիւնը հանդէպ Յառաջի որ այս կարգադրութիւնները կ'ընէ իբրեւ ՆՈՒԱԶԱԳՈՅՆ պայմաններ:

Շնորհակալութիւն մեր այն բոլոր բաժանորդներուն, որոնք իրենց կանոնաւոր եւ կանխիկ վճարումներով կ'ապահովեն թերթին կանոնաւոր հրատարակութիւնը:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Պոմոնի Կապոյտ Խաչի մասնաճիւղը, «Մանուկներու Օրը» կը տօնէ 29 Դեկտեմբեր, Հինգշաբթի օր:

## ՇՆՈՐՀԱՒՈՐ ՆՈՐ ՏԱՐԻ

Համազգային Մշակութային Ընկերութեան Կեդր. վարչութիւնը իր մասնաճիւղերու եւ Նշան Փալանճեան ճեմարանի տնօրէնութեան, ուսուցչական կազմի եւ աշակերտութեան կողմէ կը շնորհաւորէ բոլոր հայրենակիցներու եւ բարեկամներու Նոր Տարին, ցանկալով ամէնուն առողջութիւն, գործերու յաջողութիւն եւ երջանիկ կեանք: Մաղթենք, որ Նոր Տարին ապահովէ աշխարհիս խաղաղութիւն եւ հայ ժողովուրդի յոյսերու շուտափոյթ իրականացում իր ազատ հայրենիքին մէջ:

ՀԱՄԱԶԳ. ՄՇԱԿ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

×

ՎԱԼԱՆՍԷՆ Ազատ Պալեան իր ազգականներուն, իր ընկերներուն եւ իր բարեկամներուն կը մաղթէ Շնորհաւոր Նոր Տարի եւ բարի Կաղանդ:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Մարիամ Թադէոսեան եւ զաւակունք, Տէր եւ Տիկին Միքայէլ-Մարգրիտ Տէր Յակոբեան, Տէր եւ Տիկին Յովհ. Յուլիանէ Զպուքճեան, Տէր եւ Տիկին Ս. Փողհարեան, Խ. Պետրոսեան, Տէր Պետրոսեան եղբ., եւ համայն պարագաները իրենց շնորհակալութիւնը կը յայտնեն, Լիոնի քահանայից դասուն, Ազգ. Միութեան, Հ. Բ. Ը. Միութեան Եւրոպայի Կեդր. Յանձնախումբին, Կապոյտ Խաչի եւ նաեւ բոլոր անոնց, որոնք անձամբ, հեռագրաւ, նամակով, ծաղկեպսակներով եւ այցելութեամբ ցաւակցութիւն յայտնեցին իրե՛ց ամուսնոյն, հօր, թիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր, եւ ազգականին՝ ՊՕՂՈՍ ԹԱԴԷՈՍԵԱՆԻ մահուան առթիւ:

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութեան եւ Փարիզի շրջանի մասնաճիւղերուն կողմէ, Հինգշաբթի, Դեկտ. 29ին, ժամը 15ին,

**Salle Cadet, 21 Rue Cadet**

Գեղարուեստական ճոխ բաժին, հայկական պարեր, ներկայացում, եւ անակընկալներ:

Միջնարարին՝ ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱՆ բացառիկ յայտնութիւնով մը նոր տարին պիտի շնորհաւորէ ու մանուկներուն պիտի բաժնէ նախընթրիք եւ միրք:

Փոխադրութեան համար հանրակառքերը կը մեկնին.—

ԱԼՖՈՐՎԻԼ ժամը 13.30ին Փլաս Քառնօ:

ԱՌՆՈՒՎԻԼ ժամը 13.30ին, Պ. Նիկողոսեանի նպարավաճառատան առջեւէն (պիտի անցնի դաշտերէն):

ԻՍԻ.— ժամը 13.30ին Խրիմեան դպրոցէն:

ՇԱՒԻԼ.— ժամը 13.30ին դպրոցին առջեւէն:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները: Պ. Նուրհան Ֆըրընկեան հարիւր Ն. Ֆ., Տիկին Աստղիկ Հախնազարեան յիսուն Ն. Ֆ.:

Տէսին ղրկուած նուիրատուներէ.— Պ. Պ. Պօտուրեան 40 Ն. Ֆ., Զաթալեան Գէորգ, Զաթալեան Յովհաննէս, Տէր Սահակեան Մարտիկ, Գարակէօզեան Խորէն, Տէր Գաբրիէլեան, Սարգիսեան Թորոս, Թիւթիւնճեան Տիրան, Տէմիրճեան Տիգրան, Ճօրճօրլեան Հայկ, Աղէկեան Գրիգոր, Աւագեան Անուշաւան, Սիրունեան Սուրէն, Թովմասեան, Առաքելեան Սարգիս, Յակոբեան Վահան, Օհանեան Կարօ տասնական Ն. Ֆ.: Տիկին Վեհանուշ Զըրբաշեան, Նոր Տարւոյ առիթով, ընտիր տեսակէ 25 քիլօ թուզ, 25 քիլօ չամիչ եւ 24 տուփ Անանաս:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Անիէռ-Պուա Քոլոմպի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս երկուշաբթի կէսօրէ ետք ժամը 16ին, ընկերուհի Աւետիսեանի բնակարանը (14 Րիւ Լուժէ տը Լ'Իլ):

### ԲԱՐԵՆՊԱՍՏԱԿ ՎՃԱՐՔԻ ՎԻՃԱԿԱՀԱՆՈՒԹԻՒՆԸ

Հ. Բ. Ը. Մ.ի Տիկնանց Օժանդակ Միութեան բարենպատակ վաճառքին վիճակահանութեան շահած թիւերն են՝ 105 (Տիկ. Սապունճեան), 150 (Է. Ճէզիրեան) եւ 216 (Մարտիրոսեան):

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

*Ալֆորվիլի հանգանակութեան արդիւնքը*

| | |
|---|---|
| *Քաղաքապետարանի շրջան* | Ն · Ֆ ·1364 ·— |
| *Փլաս Քարնոյի շրջան* | Ն · Ֆ ·1265 ·50 |
| *Իլ Սէն Փիէռի շրջան* | Ն · Ֆ · 1648 ·50 |
| *Հ · Յ · Դ · Նոր Սերունդի Ալֆորվիլի մասնաճիւղէն* | Ն · Ֆ · 100 ·— |
| *Ընդհ · գումար* | Ն · Ֆ · 4378 ·— |

## ՀԱՅԿԱԿԱՆ ԾՆՈՒՆԴԻ

ԱՌԹԻՒ ԹԷՅԱՊԱՐ ՄԸ

*Կազմակերպուած Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղին կողմէ, ի պատիւ երիտասարդներու եւ երիտասարդուհիներու, Յունուար 8, Կիրակի ժամը 16էն 24, Հայ Մշակոյթի Ս · Թէհլիրեան սրահը,* 17 Րիւ Պլէօ, Փարիզ :

*Մուտքը ազատ է :* –

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Այրի Տիկին Սիրանոյշ Օհանեան, Տէր եւ Տիկին Սարգիս Պօղոսեան, Տէր եւ Տիկին Տիգրան Օհանեան, Տէր եւ Տիկին Պօղոս Օհանեան, Տէր եւ Տիկին Արմենակ Թորոսեան եւ զաւակներն ու ազգականները իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն բոլոր անոնց՝ որոնք անձամբ, գրով կամ ծաղկեպսակով ու նուիրատուութեամբ ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր, մեծ հօր եւ ազգականին՝*

*ԹԱԳԻՈՐ ՕՀԱՆԵԱՆԻ*

*մահուան առթիւ :*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Այրի Տիկին՝ Շահզատէ Ֆէրմանեան, Տէր եւ Տիկին Համբարձում Ֆրէնկեան, Այրի Տիկին Սուլթան Գուզուլիկեան Տէր եւ Տիկին Գուզուլիկեան ընտանիքները, Այրի Տիկին Արմենուհի Կարապետեան եւ զաւակները, իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ, գրաւոր կամ ծաղկեպսակով իրենց ցաւակցութիւնը յայտնեցին ողբացեալ՝*

*ՄԻՀՐԱՆ ՖԷՐՄԱՆԵԱՆԻ*

*կսկծալի եւ անսպասելի մահուան առթիւ :*

*Նոյն առթիւ Հ · Յ · Դ · Սէն Մարկրիթի (Մարսէյլ) «Համազասպ» խումբին բոլոր ընկերները իրենց խորին ցաւակցութիւնը կը յայտնեն լաւագոյն համակիրներէն Միհրան Ֆէրմանեանի մահուան առթիւ :*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

*Զուիցերիոյ Լոքարնօ քաղաքին մէջ գորգի գործով զբաղող, նախապէս Պոլսոյ մէջ փաստաբան Գէորգ Շահինեանի կինը եւ աղջիկը, որոնք Փարիզ կամ շրջանները կը բնակին, շատ կարեւոր խնդրի մը համար : Կը խնդրուի իմացնել Փարիզի Ս · Յովհ · Մկրտիչ եկեղեցւոյ դիւանատունը,* 15 Րիւ Ժան Կուժօն, Փարիզ (8) :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

*Նոր Տարւոյ եւ Ծնունդի առթիւ Չորեքշաբթի օրուան հաւաքոյթները ընդհատուած են :*

*Վերաբացում՝* 1961, *Յունուար* 11, *Չորեքշաբթին :*

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

*Կազմակերպուած Ֆ · Կ · Խաչի Շրջ · վարչութեան եւ Փարիզի շրջանի մասնաճիւղերուն կողմէ, Հինգշաբթի, Դեկտ. 29ին, ժամը 15ին ;*

**Salle Cadet, 21 Rue Cadet**

*Գեղարուեստական ճոխ բաժին, հայկական պարեր, ներկայացում, եւ անակընկալներ :*

*Միջնարարին՝ ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱՆ բացառիկ յայտնութիւնով մը նոր տարին պիտի շնորհաւորէ ու մանուկներուն պիտի բաժնէ նախընթրիք եւ միրգ :*

*Փոխադրութեան համար հանրակառքերը կը մեկնին ·—*

*ԱԼՖՈՐՎԻԼ ժամը* 13·30*ին Փլաս* Քառնօ :

*ԱՌՆՈՒՎԻԼ ժամը* 13·30*ին, Պ · Նիկողոսեանի նպարավաճառատան առջեւէն (պիտի անցնի Սարսելէն) :*

*ԻՍԻ ·— ժամը* 13·30*ին Խրիմեան դպրոցէն :*

*ՇԱՒԻԼ ·— ժամը* 13·30*ին դպրոցին առջեւէն :*



*ԼՈՅՍ ՏԵՍԱՒ*

## 1961 "ԳՈՅԱՄԱՐՏ" ՕՐԱՑՈՅՑ - ԱԼՊՈՄԸ

Հրատարակութիւն Հ · Յ · Դ · Նոր Սերունդի Մարսէյլի Շրջանին

*Շքեղ նկարներ, գրական եւ պատմական նիւթերով, ճոխ բովանդակութիւն :*

Ընտիր թուղթով ·— 13 էջ

ԳԵՂԱԶԱՐԴ ԵՒ ԳՈՒՆԱՒՈՐ ԿՈՂՔ

*Բացառիկ խնամքով եւ ճաշակով պատրաստուած այս ՕՐԱՑՈՅՑ – ԱԼՊՈՄԸ պիտի կազմէ ամէն հայ տան զարդը :*

Գին 5 Ն · Ֆրանք

*ԴԻՄԵԼ ·—* Հ · Յ · Դ · Նոր Սերունդի անդամներուն :







*ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ*

*Պոմոնի Կապոյտ Խաչի մասնաճիւղը, «Մանուկներու Օրը» կը տօնէ 29 Դեկտեմբեր, Հինգշաբթի օր :*

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## « ՅԱՌԱՋ » ԿԸ ՆՈՒԻՐԷՆ
### ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Օր. Վ. Նորոյեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ իր հօրը՝ Տիգրան Նորոյեանի (Լիոն), Պ. Ռոպէր Գէորգեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ իր հօրը՝ Պ. Գէորգեանի (Տէսին)։

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

ՀԻՆ ՏԱՐՈՒԱՆ ՀԵՏ
ՓԱԿԵՑԷՔ
ՁԵՐ ՀԻՆ ՀԱՇԻՒՆԵՐԸ

**Նոր Տարի**
**Նոր Բաժնեգին**

### 1961 ՅՈՒՆՈՒԱՐ 1ԷՆ ՍԿՍԵԱԼ

Յառաջի բաժանորդագրութեան նոր պայմաններն են .—

*ՖՐԱՆՍԱ*

| | | | |
|---|---|---|---|
| Տարեկան բաժնեգին՝ | | Ն. Ֆ. | 50 |
| Վեցամսեայ | | Ն. Ֆ. | 27 |
| Եռամսայ | | Ն. Ֆ. | 15 |
| Հատը՝ | | Ն. Ֆ. | 0,25 |

*ԱՐՏԱՍԱՀՄԱՆ*

| | | | |
|---|---|---|---|
| Տարեկան | 12 տոլար | Ն. Ֆ. | 60 |
| Վեցամսեայ | 7 տոլար | Ն. Ֆ. | 35 |

Պատերազմէն առաջ Յառաջ աւելի սուղ կ'արժէր քան ֆրանսական թերթերը այն պատճառով որ, իբրեւ օտար մամուլ, սահմանափակ էր տպաքանակը, իսկ առեւտրական ծանուցումները պակաս։

Պատերազմէն ետքը, երկար ատեն, Յառաջ չհետեւեցաւ տեղական մամուլին՝ արժեգինը բարձրացնելու տեսակէտով, մատչելի մնալու համար մեր ժողովուրդին։

Այսօր այնքան շրջուած են պայմանները, որ կարելի չէ բաղդատութիւն իսկ կատարել հին ու նոր գիներու միջեւ։ Տնտեսական աննախընթաց այս կացութեան մէջ՝ Յառաջ ստիպուած է փոփոխութիւն մը կատարելու բաժանորդագրութեան պայմաններու մէջ ՆՈՒԱԶԱԳՈՅՆ ՉԱՓՈՎ։ Վստահ ենք որ մեր հաւատարիմ ընթերցողները պիտի շարունակեն ցոյց տալ իրենց համակրութիւնը հանդէպ Յառաջի, որ նոյնպէս հաւատարիմ կը մնայ իր աւանդութեանց եւ ժողովուրդի կապին։

Շնորհակալութիւն մեր բոլոր այն բաժանորդներուն, որոնք իրենց կանոնաւոր եւ կանխիկ վճարումներով կ'ապահովեն թերթին կանոնաւոր հրատարակութիւնը։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### ՀՐԱԶԵԱՅ ՏԷՐ – ՆԵՐՍԷՍԵԱՆԻ ՅՈԲԵԼԵԱՆԻՆ ԱՌԹԻՒ

Վաստակաւոր տպագրիչ Հրաչեայ Տէր Ներսէսեանի յոբելեանին առթիւ եղած են հետեւեալ նուիրատուութիւնները .—

Կիւլպէնկեան հիմնարկութիւն՝ 500 Ն. Ֆ., Հ. Բ. Ը. Մ.՝ 500 Ն. Ֆ., Պ. Գրիգոր Ալէաթճեան՝ երկու հարիւր, փաստաբան Սրապեան՝ 150, Պ. Գ. Պաքըրճեան՝ հարիւր, Տէր եւ Տիկին Գէորգեան՝ հարիւր, Պ. Պ. Վահէ Ֆրէնկեան, Զ. Խանզատեան, Վ. Իչգալացեան, Լ. Գրիգորեան, Օ. Թաղէոսեան (Մարսէյլ), Ն. Ֆրէնկեան, Մ. Պէրպէրեան, Տիկին Խորասանճի, Պ. Զագըճեան, Օր. Օհանեան յիսունական Ն. Ֆ.։

(Շար.)

Նուէրները ղրկել՝ յանձնախումբի գանձապահին՝

M. A. Ohanian
22, Rue Marc Seguin, Paris (18ᵉ)

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Կարապետ Օհանեան, Երեւանի Նոր Մալաթիայի շրջանէն, որմէ լուր չկայ վերջին պատերազմէն ի վեր։ Սօրը՝ անունը Էլմաս։ Զինքը Ֆրանսա տեսնողներ [illegible] են։ Լուր ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել Պ. Հաճի Պօղոսեանի։

13, Rue Lavoisier, CACHAN (Seine)
France

×

Երեւանէն Օր. Ժիւլմա եւ Պ. Սմբատ Մանասարեան կը փնտռեն իրենց հայրը՝ Պ. Յակոբ Մանասարեանը որ վերջին պատերազմին ճակատ մեկնած եւ չէ վերադարձած։ Տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի տեղեակ պահել Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ դիւանատունը, 15 Րիւ Ժան Կուժօն, Փարիզ (8)։

Imprimerie Spéciale du journal « Haratch »

### ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Սողոմոն Թիւլպէեանէ, Վիէն Ն. Ֆ. 15
Ընկեր Գէորգ Կոփոյեանէ (Ամերիկա) ընկեր Յ. Խսկիճեանի որդւոյն՝ Գրիգորիկի մահուան առթիւ երկու տոլար։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ն. Պ. Հայ Նախկին Սպայից Միութիւնը շնորհակալութիւն կը յայտնէ՝ Փարիզի Ս. Յովհաննէս – Մկրտիչ եկեղեցւոյ վարչութեան, Յառաջի խմբագրութեան, Հ. Բ. Ը. Միութեան, Ռուսահայ Տիկնանց Միութեան, Ֆ. Կ. Խաչին, Մուրատ Ռափայէլեան Նախկին Աշակերտաց Միութեան, Հայ Նախկին Ռազմիկներու Միութեան, Պրիսթոլ–Նոր պանդոկի վարձակալներուն, ինչպէս նաեւ Պ. Պ. Եղիազարոֆի, Ղուկասոֆի, Տէր Յակոբեանցի, Տը Նորքի, Գ. Պագըրճեանի, Փիէր Ֆըրէնէի, Կ. Գազազեանի, Մ. Պետրոսեանի, Ժ. Առաքելեանի, որոնք իրենց մասնակցութիւնը բերին դերասան՝

ԲԱԳՐԱՏՈՒՆԻ

յուղարկաւորութեան եւ թաղումին։

×

Շավիլի եկեղեցւոյ հոգաբարձութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները, եկեղեցւոյն օծման Գ. տարեդարձին առթիւ։ Ոմն 150 Ն. Ֆ. (Փարիզ), Օր. Իսկուհի Անդրանիկեան հարիւր Ն. Ֆ., Գ. Լոռէնեան (Տաւկինեան) յիսուն Ն. Ֆ., Տիկին Մառի Շաթէր երեսուն Ն. Ֆ. (Սէվռան)։

### ՍԱՄՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ
#### ՆՈՐ ՏԱՐԻ ԵՒ Ս. ԾՆՈՒՆԴ

1 Յունուար, Կիրակի, Ամանորի պաշտամունք ժամը 8·30։

6 Յունուար, Ուրբաթ Ս. Ծնունդ եւ Աստուածայայտնութիւն ժամը 8·30ին։

Ս. Հաղորդութիւն մանուկներու։ (Ծնողքները կը հրաւիրուին առաջնորդել իրենց զաւակները)։

7 Յունուար, Շաբաթ, Ճրագալոյց, երեկոյեան ժամերգութիւն եւ Ս. պատարագ ժամը 4·45ին։

8 Յունուար, Կիրակի, Յիշատակ Մեռելոց եւ Ջրօրհնէք։

### Ս. ԾՆՆԴԵԱՆ ՏՕՆԵՐՈՒ ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

1 Յունուար, Կիրակի օր Ս. Պատարագ ժամը 10ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ։

5 Յունուար, Հինգշաբթի, Ճրագալոյց Ս. Ծննդեան։ Սկիզբ ժամերգութեան ժամը 3·30ին։ Ս. պատարագ ժամը 5ին։

6 Յունուար, Ուրբաթ, Տօն Ս. Ծննդեան եւ Աստուածայայտնութեան։ Սկիզբ ժամերգութեան ժամը ութին։ Ս. պատարագ ժամը 10ին։ Կը պատարագէ եւ կը քարոզէ Հայրապետական պատուիրակ Գերաշնորհ Տէր Սերովբէ Եպիսկ. Մանուկեան, յետ պատարագի Ջրօրհնէքի արարողութիւն։

7 Յունուար, Շաբաթ, Մեռելոց։ Ս. պատարագ ժամը 10ին։

8 Յունուար, Կիրակի, Ս. պատարագ, ժամը 10ին։

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Զուիցերիոյ Լոքարնօ քաղաքին մէջ գործի զործով զբաղող, նախապէս Պոլսոյ մէջ փաստաբան Գէորգ Շահինեանի կինը եւ աղջիկը, որոնք Փարիզ կամ շրջաններ կը բնակին, շատ կարեւոր խնդրի մը համար։ Կը խնդրուի իմացնել Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ դիւանատունը, 15 Րիւ Ժան Կուժօն, Փարիզ (8)։



## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութեան եւ Փարիզի շրջանի մասնաճիւղերուն կողմէ, Հինգշաբթի, Դեկտ. 29ին, ժամը 15ին։

**Salle Cadet, 21 Rue Cadet**

Գեղարուեստական ճոխ բաժին, հայկական պարեր, ներկայացում, եւ անակնկալներ։

Միջնարարին՝ ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱՆ բացառիկ յայտնութիւնով մը նոր տարին պիտի շնորհաւորէ ու մանուկներուն պիտի բաժնէ նախընթրիք եւ միրգ։

Փոխադրութեան համար հանրակառքերը կը մեկնին .—

ԱԼՖՈՐՎԻԼ ժամը 13·30ին Փլաս Քառնօ։

ԱՌՆՈՒՎԻԼ ժամը 13·30ին, Պ. Նիկողոսեանի նպարավաճառատան առջեւէն (պիտի անցնի Սարսելէն)։

ԻՍԻ .— ժամը 13·30ին Խրիմեան դպրոցէն։

ՇԱՒԻԼ .— ժամը 13·30ին դպրոցին առջեւէն։

## « ՅԱՌԱՋ »Ի ԲԱՐԳԱՒԱՃՄԱՆ ՀԱՄԱՐ

Իրենց այցելութեան առթիւ Տէր եւ Տիկին Յակոբ Կօշկակարեան (Վալանս) քսան Ն. Ֆ. կը նուիրեն, Տիկին Քէօչ-քէրեան (Լուառ) քսան Ն. Ֆ., Տիկին Տէմիրճեան տասը Ն. Ֆ.:

Մարսէյլէն Պ. Գրիգոր Պաղտասարեան տասը Ն. Ֆ.:

Վալանսէն Ազատ Պալեան հինգ Ն. Ֆ.:

## ՆՈՐ ՏԱՐՈՒՈՅ ԱՌԹԻՒ

Գ. Կիւլպէնկեան հիմնարկութեան Օժանդակութիւնը

Նոր տարուոյ առթիւ Հ. Բ. Ը. Միու-թեան Եւրոպայի Կեդր. Յանձնաժողովը Գալուստ Կիւլպէնկեան Հիմնարկութենէն ստացած է 6200 Ն. Ֆ.ի գումարը, հե-տեւեալ նպատակներու համար.—

Հ. Բ. Ը. Միութեան Փարիզի մասնա-ճիւղին հազար Ն. Ֆ., Փարիզի համալը-սարանական ոստանին Հայկ. Տան ուսա-նողներուն համար հազար, Ֆ. Կ. Խաչին հազար, Հայ Ազգատախնամ Ընկերութեան հազար, Փարիզահայ Տիկնանց Միութեան բուժարանին համար հինգ հարիւր Ն. Ֆ., Փարիզահայ Տիկնանց Որբ. Միութեան հինգ հարիւր, Առնուվիլի Հայոց եկեղե-ցիին հինգ հարիւր, Ալֆորվիլի Հայոց ե-կեղեցիին հինգ հարիւր, Փարիզի Հայոց եկեղեցիին համար, իբրեւ «Իւղագին» 200 Ն. Ֆ.:

Բաց աստի, 1960 տարուան ընթացքին Հ. Բ. Ը. Միութեան Եւրոպայի Կեդր. Յանձնաժողովը Գալուստ Կիւլպէնկեան Հիմնարկութենէն ստացած եւ բաշխած է 28750 Ն. Ֆ.ի գումարը, կարօտ ազգա-յիններու:

## ՓԱՐԻԶԻ ԱԶԳԱՏԱԽՆԱՄԻ ԲԱՑԱՌԻԿ ՕԳՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Դ. Ցանկ

Գ. Կիւլպէնեան Հիմնարկութեան կողմէ Ազգատախնամի տրամադրութեան տակ դրուած մասնաւոր գումարէն հետեւեալ նոր բացառիկ օգնութիւնները կատար-ուած են Ապրիլ մէկէն մինչեւ Դեկտեմ-բեր 15 (1960): Նկատի առնուած են բազ-մաթիւ խնդրանքներ եւ յետ քննութեան քսան անձերու յատկացուած 3·039,62 Ն. Ֆ.ի օժանդակութիւն հետեւեալ վայրե-րու մէջ:

Փարիզէն ինը անձերու, որոնցմէ եր-կուքին 300ական Ն. Ֆ., մէկուն 200 Ն. Ֆ., միւսին 160 Ն. Ֆ., երեքին 150ական Ն. Ֆ., մէկուն 110 Ն. Ֆ., միւսին 42,70 Ն. Ֆ.:

Փարիզի շրջակայքէն չորս անձերու ո-րոնցմէ երկուքին 200ական Ն. Ֆ. եւ միւս երկուքին 150ական Ն. Ֆ.:

Գաւառէն վեց անձերու որոնցմէ մէկուն 121,92 Ն. Ֆ., միւսին 155, երկուքին 150ական, եւ միւս երկուքին հարիւրա-կան Ն. Ֆ.:

Ա. ցանկով հրատարակուած 1·219,21 Ն. Ֆ., Բ. ցանկով հրատարակուած 2·189,10, Գ. ցանկով հրատարակուած 2·901,40 Ն. Ֆ., ներկայս 3·039,62 Ն. Ֆ.: Ընդհ. գումար 9·349,33 Ն. Ֆ.: (Առաքման ծախքերու՝ 43·45 Ն. Ֆ.):

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆ ՍՐԱՀԻՆ

Վալանսէն Ազատ Պալեան՝ տասը Ն. Ֆ.: (Ստանալ «Յառաջ»էն):

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն Յանձնախումբը շը-նորհակալութեամբ ստացաւ Շասէն Պ. Նազար Փիլիկեանէ ի նպաստ Լիոնի եկե-ղեցւոյ շինութեան 50 Ն. Ֆ.: Պ. Արմե-նակ Աւետեանէ հանգուցեալ Յակոբ Սոֆ-եանի մահուան առթիւ փոխան ծաղկե-պսակի տասը Ն. Ֆ., Տիկին Մ. Համբար-ձումեանէ հինգ Ն. Ֆ.:





## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութեան եւ Փարիզի շրջանի մասնա-ճիւղերուն կողմէ, Հինգշաբթի, Դեկտ. 29ին, ժամը 15ին,

**Salle Cadet, 21 Rue Cadet**

Գեղարուեստական ճոխ բաժին, հայ-կական պարեր, ներկայացում, եւ անա-կընկալներ:

Միջնարարին՝ ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱՆ բացա-ռիկ յայտնութիւնով մը նոր տարին պիտի շնորհաւորէ ու մանուկներուն պիտի բաժ-նէ նախընթրիք եւ միրգ:

Փոխադրութեան համար հանրակառքերը կը մեկնին.—

ԱԼՖՈՐՎԻԼ ժամը 13·30ին Փլաս Քառնօ:

ԱՌՆՈՒՎԻԼ ժամը 13·30ին, Պ. Նիկողոսեանի նպարավաճառատան առջեւէն (պի-տի անցնի Սարսելէն):

ԻՍԻ.— ժամը 13·30ին Խրիմեան դպրոցէն:

ՇԱՒԻԼ.— ժամը 13·30ին դպրոցին առջեւէն:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ֆ. Կ. ԽԱՉԻ Մարսէյլի մասնաճիւղը «Մանուկներու Օրը» պիտի տօնէ Յուն-ուար ութին, Ահարոնեան Ակումբին մէջ:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Բ. Ը. Միութեան տարեկան պարա-հանդէսը տեղի պիտի ունենայ Փետր. 19ին:

## ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ «ՅԱՌԱՋ» ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Մոնթըրոյէն Տիկին Սիմոն Պէճինեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ Պ. Մանուկ Ոսկերիչեանի (Լիոն)։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Նանօ Խարոյեան (Խարբերդ), Տէր եւ Տիկին Արմ. Խարոյեան, Տէր եւ Տիկին Ասատ. Խարոյեան, Տէր եւ Տիկին Կար. Տէրտէրեան (Մարսէյլ), հոգեհանգստեան Ս. պատարագ մատուցանել կուտան, այս Կիրակի Պոմոնի Հայոց կեղեցւոյն մէջ, ի յիշատակ հանգուցեալ Օհան, Նշան, Խաչատուր Խարոյեանի, ինչպէս նաեւ Տէրտէրեան գերդաստաններու ննջեցելոց յիշատակին։

Կը խնդրուի հանգուցեալներուն յիշատակները յարգողներէն ներկայ գտնուիլ։

### ՄԱՐՍԷՅԼԻ

Սեբաստիոյ Նահանգի Մուրատ Ուսումնասիրացի Դեկտեմբեր չորսի վիճակահանութեան շահած թիւերն են.— 195՝ ինքնահոս գրիչ մը, 296՝ հեռատեսիլի սեղան մը, 165՝ զոյգ մը կօշիկ չափի վրայ, 506՝ ինքնահոս գրիչ մը, 191՝ թեւի ժամացոյց մը (այր մարդու, ոսկի)։

Առարկաները ստանալու համար դիմել Ռաֆֆի պանդոկը, 13 Րիւ Թիւպանօ, մինչեւ Մարտ 15, այդ թուականէն ետք առարկաները կը պատկանին Միութեան։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Ազգ. Միութիւնս շնորհակալութեամբ ստացած է Փարիզաբնակ Պ. Կարապետ Սօֆեանէ իր եղբօր Պ. Յակոբի ղանողէտ մահուան առթիւ հարիւր Ն. Ֆ.։ յիսունը յատկացուած է եկեղեցւոյ եւ յիսունն ալ եկեղեցւոյ շինութեան յանձնախումբին։

### Ս. ԾՆՆԴԵԱՆ ՏՕՆԵՐՈՒ ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

1 Յունուար, Կիրակի օր Ս. Պատարագ ժամը 10ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ։

5 Յունուար, Հինգշաբթի, Ճրագալոյց Ս. Ծննդեան։ Սկիզբ ժամերգութեան ժամը 3·30ին։ Ս. պատարագ ժամը 5ին։

6 Յունուար, Ուրբաթ, Տօն Ս. Ծննդեան եւ Աստուածայայտնութեան։ Սկիզբ ժամերգութեան ժամը ութին։ Ս. պատարագ ժամը 10ին։ Կը պատարագէ եւ կը քարոզէ Հայրապետական պատուիրակ Գերաշնորհ Տէր Սերովբէ Եպիսկ. Մանուկեան, յետ պատարագի Ջրօրհնէքի արարողութիւն։

7 Յունուար, Շաբաթ, Մեռելոց։ Ս. պատարագ ժամը 10ին։

8 Յունուար, Կիրակի, Ս. պատարագ, ժամը 10ին։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Յ. Կ. ԽԱՉԻ Մարսէյլի մասնաճիւղը «Մանուկներու Օրը» պիտի տօնէ Յունուարի 1ին, Ահարոնեան Ակումբին մէջ։

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

### ՆՈՐ ՏԱՐԻ ԵՒ Ս. ԾՆՈՒՆԴ

1 Յունուար, Կիրակի, Ամանորի պաշտամունք ժամը 8·30։

6 Յունուար, Ուրբաթ Ս. Ծնունդ եւ Աստուածայայտնութիւն ժամը 8·30ին։

Ս. Հաղորդութիւն մանուկներու։ (Ծնողքները կը հրաւիրուին առաջնորդել իրենց զաւակները)։

7 Յունուար, Շաբաթ, Ճրագալոյց, երեկոյեան ժամերգութիւն եւ Ս. պատարագ ժամը 4·45ին։

8 Յունուար, Կիրակի, Յիշատակ Մեռելոց եւ Ջրօրհնէք։

### ԾՆՈՒՆԴԸ ՊՈՄՈՆԻ ՄԷՋ

Ըստ կրօն. ժողովի որոշման, յառաջիկայ Կիրակի Նոր Տարւոյ արարողութիւնք կը սկսին ժամը 8·30ին, պատարագ ժամը 10·30ին։

Յունուար 7, Շաբաթ երեկոյ Ճրագալոյցի արարողութիւն, ժամը 4։

Յունուար 8 Կիր.—Տօն Ծննդեան սկիզբ ժամերգութեանց ժամը 8։ Ս. պատարագ ժամը 10, հանդիսաւոր Ջրօրհնէք ժամը 11·45։

Յունուար 9 Երկուշաբթի.— Մեռելոց, սկիզբ ժամերգութեան 8·30, պատարագ՝ ժամը 10, հոգեհանգիստ ընդհ. մեռելներու Հայոց ժամը 11·30։

## ՀԱՅԿԱԿԱՆ ԾՆՈՒՆԴԻ ԱՌԹԻՒ ԹԷՅԱՍԵՂԱՆ ՄԸ

Կազմակերպուած Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղին կողմէ, ի պատիւ երիտասարդներու եւ երիտասարդուհիներու, Յունուար 8, Կիրակի ժամը 16էն 24, Հայ Մշակոյթի Ս. Թէհլիրեան սրահը, 17 Րիւ Պլէօ, Փարիզ։

Մուտքը ազատ է։

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Պոմոնի Կապոյտ Խաչի մասնաճիւղը, «Մանուկներու Օրը» կը տօնէ 29 Դեկտեմբեր, Հինգշաբթի օր։

### ՀՐԱՉԵԱՅ ՏԷՐ – ՆԵՐՍԷՍԵԱՆԻ ՅՈԲԵԼԵԱՆԻՆ ԱՌԹԻՒ

Վաստակաւոր տպագրիչ Հրաչեայ Տէր Ներսէսեանի յոբելեանին առթիւ եղած են հետեւեալ նուիրատուութիւնները.—

Բ.

Պ. Գառնիկեան 25 Ն. Ֆ., Պ. Պ. Նուպար Յովհաննէսեան, Գրիգոր Ծօլօլեան, Հ. Աղաբէկեան, Է. Պապեան, Տիկին Նասիպ, Պ. Պ. Ա. Հարէնց, Զիթունի, Մ. Գազանճեան, Վ. Զիլինկիրեան, Գաւուքճեան, Ա. Աճէմեան, Ս. Մարգարեան 20ական, Օ. Դարբինեան, Քելինճեան, Սինանեան, Բաթուկեան, Թէրզեան, Վ. Աճէմեան տասնական Ն. Ֆ., Փրոֆ. Արամեան հինգ Ն. Ֆ.։

Նուէրները ղրկել՝ յանձնախումբի գանձապահին՝

M. A. Ohanian
22, Rue Marc Seguin, Paris (18e)



### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Բ. Ը. Միութեան տարեկան պարահանդէսը տեղի պիտի ունենայ Փետր. 19ին։

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## Ս. ԾՆՆԴԵԱՆ ՏՕՆԵՐՈՒ ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

5 Յունուար, Հինգշաբթի, Ճրագալոյց Ս. Ծննդեան: Սկիզբ ժամերգութեան ժամը 3·30ին: Ս. պատարագ ժամը 5ին:

6 Յունուար, Ուրբաթ, Տօն Ս. Ծննդեան եւ Աստուածայայտնութեան: Սկիզբ ժամերգութեան ժամը ութին: Ս. պատարագ ժամը 10ին: Կը պատարագէ եւ կը քարոզէ Հայրապետական պատուիրակ Գերաշնորհ Տէր Սերովբէ Եպիսկ. Մանուկեան, յետ պատարագի Ջրօրհնէքի արարողութիւն:

7 Յունուար, Շաբաթ, Մեռելոց: Ս. պատարագ ժամը 10ին:

8 Յունուար, Կիրակի, Ս. պատարագ, ժամը 10ին:

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

### Ս. ԾՆՈՒՆԴ

6 Յունուար, Ուրբաթ Ս. Ծնունդ եւ Աստուածայայտնութիւն ժամը 8·30ին:

Ս. Հաղորդութիւն մանուկներու: (Ծնողքները կը հրաւիրուին առաջնորդել իրենց զաւակները):

7 Յունուար, Շաբաթ, Ճրագալոյց, երեկոյեան ժամերգութիւն եւ Ս. պատարագ ժամը 4·45ին:

8 Յունուար, Կիրակի, Յիշատակ Մեռելոց եւ Ջրօրհնէք:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

«Մանուկներու Օրը» Կրընոպլի մէջ կը տօնուի, նախաձեռնութեամբ Կապ. Խաչի, Յունուար 15ի Կիրակին, Րիւ Ժէի սրահին մէջ:



ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Բ. Ը. Միութեան տարեկան պարահանդէսը տեղի պիտի ունենայ Փետր. 19ին:



Imprimerie Spéciale du journal «Haratch»

## ԾՆՈՒՆԴԸ ՊՈՄՈՆԻ ՄԷՋ

Ըստ Կրօն. Ժողովի որոշման, յառաջիկայ Կիրակի Նոր Տարւոյ արարողութիւնք կը սկսին ժամը 8·30ին, պատարագ ժամը 10·30ին:

Յունուար 7, Շաբաթ երեկոյ Ճրագալոյցի արարողութիւն, ժամը 4:

Յունուար 8 Կիր.— Տօն Ծննդեան սկիզբ ժամերգութեանց ժամը 8: Ս. պատարագ ժամը 10, հանդիսաւոր Ջրօրհնէք ժամը 11·45:

Յունուար 9 Երկուշաբթի.— Մեռելոց, սկիզբ ժամերգութեան 8·30, պատարագ՝ ժամը 10, հոգեհանգիստ ընդհ. մեռելոց ներու Հայոց ժամը 11·30:

## ՊԱՏԱՐԱԳ ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Տէսինի Կօրն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ թէ նոր տարուան առթիւ պիտի կատարուի արարողութիւն եւ պատարագ.—

Այս Շաբաթ ժամը 5ին ժամերութիւն եւ Լոյս Զուարթի արարողութիւն:

Այս Կիրակի ժամերգութիւն ժամը 8·30ին, Ս. պատարագ ժամը 10ին, Նոր Տարուան պատգամ ժամը 11ին:

Պիտի պատարագէ եւ քարոզէ Տէսինի հոգեւոր հովիւ Տ. Վարազ քհնյ. Աւագեան:

Դպրապետութեամբ Պ. Գրիգոր Մարտիրոսեանի, պատարագի խորանի վրայ երգուելիք մասին պիտի մասնակցին նորակազմ երգչախումբի երիտասարդներ:

## ՀԱՅԿԱԿԱՆ ԾՆՈՒՆԴԻ

### ԱՌԹԻՒ ԹԷՅԱՍԵՂԱՆ ՄԸ

Կազմակերպուած Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղին կողմէ, ի պատիւ երիտասարդներու եւ երիտասարդուհիներու, Յունուար 8, Կիրակի ժամը 16էն 24, Հայ Մշակոյթի Ս. Թէհլիրեան սրահը, 17 Րիւ Պլէօ, Փարիզ:

Մուտքը ազատ է:

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Պոմոնի Կապոյտ Խաչի մասնաճիւղը, «Մանուկներու Օրը» կը տօնէ 29 Դեկտեմբեր, Հինգշաբթի օր:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ֆ. Կ. ԽԱՉԻ Մարսէյլի մասնաճիւղը «Մանուկներու Օրը» պիտի տօնէ Յունուար ութին, Ահարոնեան Ակումբին մէջ:

## ԴԵՐԱՍԱՆ ԹՐԱԳՕՇԻ

### ՆՈՐ ՍԱԼԵՐԸ (Միքրոսիյօն)

Թիւ 1 եւ թիւ 2 բոլորովին նոր երգեր 9 երգերով եւ 4 նուագով (կէս ժամ տեւողութեամբ իւրաքանչիւրը):

Բոլոր երգերը տպագրուած կը գտնէք պահարանին մէջ:

Փարիզի մէջ կարելի է գտնել միայն Հ. Բալուեանի մօտ, 43 Րիւ Րիշէ, (Փարիզ 9):

Մատչելի գիներով 10 Ն. Ֆ. միայն տօներու առթիւ: